

# ՄԱՅԻՍՅԱՆ ԵՐԳ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Դու երկնքի կապույտ
Երազանք ես վառում,
Կակաչներով կարմիր
Նազում ես ու թուրում:
Մեր խնդության համար
Դու աշխարհ ես գալիս.
Գեղեցկության դու մա՛յր,
Երջանկության մայի՛ս...
Ալ դրոշներ ունես
Հորիզոնում քո բիլ,
Դու ծնծղաներ ունես,
Որ զրնգում են զիլ:
Կապույտ գարնան, կապույտ
Մանուշակի մայի՛ս,
Կարմիր վարդի, կարմիր
Դրոշակի մայի՛ս,
Ի՛նչ հուշեր են անմար
Քեզ հետ աշխարհ գալիս,
Դու՝ մայիսին ընկած
Հերոսների ամիս:
Դու՝ Ղուկասի շուրթին
Ցավով սառած մայի՛ս,
Դու՝ Ղուկասի փառքով
Շարունակված մայի՛ս:
Նոյեմբերով փրկված
Դու մեր բախտի մայի՛ս,
Հիսուն անգամ բացված
Մեր դրախտի մայի՛ս,
Քեզնով երկիրն իմ միշտ
Պիտի ծաղկի, մայի՛ս:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

195-70



# ՄԱՅԻՍԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Ամեն անցնող մայիս ի վերջո պատմություն է դառնում: Եվ ոչ մի նոր մայիս երբեք նման չէ նախորդներին: Ու թեև մեր օրացույցի թերթիկների վրա կրկնվում են օրերը, մեր ժամացույցները հաշվում են նույն ժամերն ու վայրկյանները, դրանք ոչ թե կրկնություն են, այլ շարունակությունը պատմության:

Յուրաքանչյուր մայիս սկսվում է մայիսմեկյան առավոտով ու մայիսմեկյան շքերթով: Փողփողում են դրոշները, տոնականորեն զարդարված փողոցներով քայլում են շքերթի ելած մարդիկ, հնչում են երգն ու ծիծաղը: Բայց այս ամենը ճիշտ է միայն 49 մայիսների համար, իսկ 1920 թվականի մայիսմեկյան առավոտը բացվում էր մի Հայաստանի վրա, որ մեզանից շատ-շատերին, ու առավել ևս՝ այսօրվա պիոներներին, ծանոթ է միայն գրքերից:

Եվ այսպես՝ մենք 1920 թվականն ենք գնացել: Գարուն է: Սարալանջերը կանաչել են, բողբոջել են ծառերը, տանիքների քիվերի տակ ծիծեռնակներն են ելումուտ անում, ինչպես հազար տարի առաջ, ինչպես այսօր, բայց որքան լայն ենք ընդգրկում Հայաստանի համայնապատկերը, այնքան բնության զարթոնքի պատկերը աղոտանում է: Հայ ժողովուրդը օրհասական վիճակում է: Ամենուրեք սով է: Երևանում մոլեգնում է համաճարակը: Քաղաքի փողոցները լի են հազարավոր որբ ու անօթևան երեխաներով, սովատանջ ու հիվանդ գաղթականներով: Դրությունը նույնն է նաև մյուս քաղաքներում ու գյուղերում: Դաշնակցական կառավարությունը ի վիճակի չէ կառավարել երկիրը: Պատերազմից ու բռնություններից հոգնած ժողովրդի մեջ աճում է դժգոհությունը: Պետք է փրկել երկիրը: Ապրիլի վերջին օրերն են: Եվ ահա մեր կինոժապավենի վրա սկսում են ծավալվել այն իրադարձությունները, որոնք սկիզբ դրեցին Հայաստանում մայիսյան հերոսական պատմությանը:

Երևանում ու Ալեքսանդրապոլում, Կարսում ու Ղարաքիլիսայում և Հայաստանի այլ վայրերում մայիսմեկյան տոնակատարությունը վերածվեց հակադաշնակցական մեծ ցույցի, ցույց, որ ընթանում էր երկրում սովետական իշխանություն հաստատելու նշանաբանով: Դաշնակցական կառավարությունը զուր էր բանակին հրահանգում ցրել ցույցը: Ցուցարարների շարքերն ստվարանում էին: Նրանց առջևից, կարմիր դրոշ պարզած, գնում էին կոմունիստները:

«Ալեքսանդրապոլում ընդհարումներ էին տեղի ունենում ցուցարարների ու դաշնակցականների միջև: Բանակի զինվորների մի մասը միացավ բոլշևիկ ցուցարարներին:

Մի շարք վայրերում ցույցերը վերածվեցին զինված ապստամբության: Մայիսի 2-ին ապստամբվեց Ալեքսանդրապոլի կայարանում կանգնած «Վարդան զորավար» զրահագնացքի անձնակազմը: Անձնակազմը, հրամանատար Սարգիս Մուսայելյանի ղեկավարությամբ, դադարեց դաշնակցական հրամանատարությանը ենթարկվել, և զրահագնացքը վերածվեց ապստամբության նախապատրաստական շտաբի:

Մայիսի 10-ի վաղ առավոտյան «Վարդան զորավար» զրահագնացքում հավաքվեցին Հայաստանի Ռազմա-հեղափոխական կոմիտեի անդամները: Եվ շատ չանցած, քաղաքի վրա տարածվեց նրանց հրապարակած կոչը, որով Հայաստանի բանվորների, գյուղացիների և կարմիր զորքերի կամքով տապալված էր հայտարարվում դաշնակցական կառավարությունը և երկրում հռչակվում էր սովետական իշխանություն:

Շուտով դաշնակցականները հոծ խմբերով գրոհեցին կայարանի վրա, բայց չդիմացան զրահագնացքի կրակին: Ապստամբներն անցան հարձակման: Նրանց էին միանում աշխատավորների նորանոր խմբեր, զինվորները լքում էին դաշնակցական բանակի շարքերը և նույնպես միանում ապստամբներին: Դաշնակցականները դուրս շպրտվեցին քաղաքից, և Ալեքսանդրապոլը լիովին անցավ բոլշևիկների ձեռքը:

Նույն օրը ապստամբվեց նաև Կարսը: Այստեղ ապստամբության ղեկավարներից էր Ղուկաս Ղուկասյանը՝ Հայաստանի առաջին կոմերիտական կազմակերպության ղեկավարը: Ապստամբները գրավեցին քաղաքը, և Կարսի բերդի վրա ծածանվեց հեղափոխության կարմիր դրոշը:

Մեկը մյուսի ետևից ապստամբություններ էին բռնկվում Սարիղամիշում ու Նոր-Բայազետի գյուղերում, Իջևանի շրջանում ու Զանգեզուրում: Ամենուրեք ապստամբները ցուցաբերում էին անօրինակ հերոսականություն ու անձնուրացություն: Եվ պատահական չէ, որ ռուս զինվորական Նեչաևը, որպես ականատես, Աչաջուրի դեպքերի մասին գրել է.

«...Համարձակ, հանգիստ խղճով պնդում եմ, որ ժողովրդական խանդավառության այդպիսի օրինակ-

Ներ ես՝ առաջին իսկ կրակոցից Ռուսաստանի քաղաքացիական պատերազմի մասնակիցս, չեմ տեսել:

Ես տեսնում էի, թե ինչպես մայրերն ու կանայք փամփուշտներով զինում էին իրենց մերձավորներին և հանձնելով հրացանները, նրանց ուղարկում դիրքերը. դա փաստ է: Չունենալով գնդացիրներ ու թընդանոթներ, սահմանափակ քանակությամբ փամփուշտներով արդյոք նրանք շա՞տ բան կարող էին անել գնդացրային ու հրետանային կրակի դեմ, որով նրանց գնդակոծում էին կառավարական զորքերը»:

Այո՛, ուժերն անհավասար էին: Մայիսի 12-ին ընկավ Կարսը: Ապստամբների վերջին խմբերը պաշտպարվեցին բերդում: Ամբողջ օրը համառ մարտեր մղելուց հետո, ապստամբների վերջին խումբը Ղուկաս Ղուկասյանի ղեկավարությամբ ճեղքեց թշնամու շղթան և դուրս եկավ շրջապատումից: Նրանք մարտերով նահանջում էին Ալեքսանդրապոլ: Արգինա գյուղի մոտ, Ալեքսանդրապոլից ոչ հեռու, նրանք ստիպված էին նորից մարտի բռնվել հանկարծակի վրա հասած դաշնակցական խմբերի հետ: Լինելով ընդամենը քըսանութ հոգի, նրանք մինչև պղյան վերջին կաթիլը դիմադրում էին ու կռվում քաջաբար: Իր ընկերների հետ այդ մարտում զոհվեց նաև Ղուկաս Ղուկասյանը:

Շուտով ընկավ նաև Ալեքսանդրապոլը: Սկսվեց դաժան տեռորը: Դաշնակցականները հաշվեհարդար էին տեսնում ապստամբության մարտիկների հետ: Հազարավոր մարդիկ նետվեցին բանտերը: Նրանց ընկըճելու համար դաշնակցականներն ինչ միջոցի ասես որ չէին դիմում: Ալեքսանդրապոլի բանտում գնդակահարվեցին հեղափոխության ղեկավարներից Եգոր Սևյանը, Փանյանը և նրանց ընկերներից շատերը: Սակայն բանտում էլ բոլշևիկներն իրենց պահում էին հեղափոխության մարտիկներին վայել արիությամբ: Շատ-շատերի հետ Երևանի բանտը նետվեցին Հայաստանի բոլշևիկների ղեկավար Ստեփան Ալավերդյանը, Սարգիս Մուսայելյանը, Բագրատ Ղարիբջանյանը: Նըրանց գնդակահարեցին Նորքի ձորում: Երբ Ստեփան Ալավերդյանին դաշնակցականները տանում էին գընդակահարելու, նա համարձակորեն շպրտեց նրանց երեսին. «Լա՛վ հիշեցեք հեղափոխության գործը չի մեռնի: Հայաստանի բանվորներն ու գյուղացիները տեր կդառնան իշխանությանը»:

Մայիսյան ապստամբության հերոսներն ընկան՝ իրենց ժողովրդի վերածննդի հավատը սրտերում: Եվ այդ օրը չուշացավ՝ նոյեմբերի 29-ին Հայաստանում մեկընդմիշտ հաղթանակեց սովետական իշխանությունը:

Մարդկանց մասին դատում են նրանց գործով, իսկ Մայիսյան ապստամբության հերոսները իրենց կյանքով ու արյունով գրեցին մեր ժողովրդի պատմության պայծառ էջերից մեկը՝ մայիսյան պատմության էջը:

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԱՂԹԱԿԱՆ ԱՎԱՐՏԻ 25-ԱՄՅԱԿԸ

# ՀԱՂԹԱՆԱԿԻ ԱՌԱՎՈՏ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ



Բացվում է գարնան օրը զովասուն
Ծիծեռնակների ձայնով քաղցրավեճ...
Հրանոթների վերջերգն եմ լսում
Այս պարզ ու կապույտ առավոտի մեջ:
Բուրում է մեղմիվ մայիսն անվրդով,
Այգում խայտում է առվակը զուլալ,
Այնպես եմ լցվում այս առավոտով,
Որ թե՛ ուզում եմ ծիծաղել, թե՛ լալ:
Այսօրվա համար, այս լույս ու ցողի,
Որքա՜ն խիզախներ ընկան մարտերում,
Բայց հավերժորեն ապրում են նրանք,
Ապրում են մեզ հետ մեր ջերմ սրտերում:
Իմ լա՛վ մանուկներ, ծաղկունքի մեջ վառ
Ծաղկեցե՜ք դուք էլ արևով անմար:
Եվ ում ուզում եք կյանքում մոռացեք,
Զինվորին զոհված դուք չմոռանա՜ք:

Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ



# ԳԱՐՈՒՆ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

Մասիս սարից ամպը ճայթեց,
Շող-կայծակը ճառագայթեց
Ու տառերով բոսորագույն
Մեր երկնքում գրեց՝ «Գարուն»...
Անձրև՛, անձրև՛...

Լարեր իջան երկնից-երկիր,
Հնչեց հազար երգ ու թրթիռ...
Շիթերն իջած գետնի երես,
Ոստոստում են հավքերի պես...
Անձրև՛, անձրև՛...

Ծիածանը սարից իջել
Ու կրկնում է՝ «Քիչ էլ, քիչ էլ»...
Իսկ աչքերից պարզ ու վճիտ
Խնդություն է թափվում շիթ-շիթ...
Անձրև՛, անձրև՛...

Հալվեց Մասսի ձյունիկը սառ
Ու կարկաչեց լանջերն ի վար,
Լանջերն ի վար վազեց ոտով,
Մոր գիրկն ընկավ խոր կարոտով...
Անձրև՛, անձրև՛...

Արաքսը խենթ՝ հունից ելած,
Աչքերի մեջ՝ ծիծաղ ու լաց,
Ո՞նց է գոռում ու գալարվում...
Այս ի՞նչ արիր, անո՛ւշ գարուն...
Անձրև՛, անձրև՛...

Հազար շշուկ, հազար կարկաչ...
Հազար կարոտ ու հազար կանչ...
Հայոց քաղցրիկ հողն արթնացել,
Մասիսի դեմ սիրտն է բացել...
Անձրև՛, անձրև՛...

# ԵՐԲ ԱՄԲՈՂՋ ԳԻՇԵՐ ՔՆԱԾ ԷՐ ԱՐԵՎԸ

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Երկու զինվոր դուրս եկան պահակատնից: Նրանք զենքերը ուղղեցին դեպի մութ ամպը ու լիցքավորեցին: Ասես ուզում էին մոտեցող գիշերը սպանել: Ապա քայլեցին դեպի լուռ աշտարակները:

— Դե՞... ինչպե՞ս է...

— Ոչի՛նչ,—ասաց պահակակետը հանձնող զինվորը,— ամեն բան առաջվա պես է:

Արսենը նայեց նրան ու համոզվեց, որ ամեն ինչ առաջվա պես էր...

Հոգնած զինվորն իջավ ցած, ու Արսենը տեսավ, թե ինչպես տախտակամածի վրա թավալվող մառախուղը աստիճանաբար կուլ տվեց նրա սև սապոգները: Արսենը մենակ մնաց իր ավտոմատի ու հեռախոսի հետ: Նա հենվեց պատուհանին և ուշադիր շուրջը նայեց: Տագնապալի դեռ ոչինչ չկար: Սկսեց անձրևել: Երկար ծեծվելուց ապակիները քրտնեցին: Ցանկապատի լույսի շողերը կոտակվեցին կաթիլների մեջ: Լուսամփոփները ճոճվում էին և լուսաթաթախ կաթիլներ թողնում աջ ու ձախ: Ի՜նչ մտքեր ասես, որ չէին ծնվում յուրաքանչյուր հանդարտ ճոճքի հետ: Մեկ նրան թվում էր, թե նորից երեխա է, մեկ թե՝ առաջին դասարանցի է, և նա հաշվում էր աչքին երևացող բոլոր լապտերները, մեկ էլ մեծանում էր ու Երևանի լուսավոր փողոցներից մեկի անկյունում սպասում Նարինեին... Հետո սթափվում էր, և նորից զինվոր էր... գիշերային ժամապահ, որից պահանջվում էր զգոն ու արթուն լինել: Սկզբում նրան թվում էր, թե պահակակետերում նույնիսկ մտածել չի կարելի, բայց ամիսների ընթացքում հասկացավ, որ դա անկարելի է, մանավանդ, երբ մենակ ես, մտքերից բացի, ոչ մի ընկեր չունես: Նա բարձրացրեց հայացքը: Հեռվում մութ անտառը տանջվում էր միլիոնավոր կաթիլների հարվածներից, իսկ գյուղի գերանակապ տնակները թրջվել ու գորշավուն էին դարձել: Գյուղը հանգիստ քնած էր, որովհետև աշտարակներում հսկում էին ժամապահները: Արսենը ներքին հպարտությամբ ժպտաց: Կար ժամանակ, երբ մայրն էր նրան հսկում քնած ժամանակ, իսկ հիմա ինքն է հսկում մի ամբողջ գյուղ, մի մեծ հայրենիք: Նա մոտեցավ պատուհանին ու կաթիլներով ծածկված ապակիների միջից նկատեց պարսպի հեռավոր ծայրում կանգնած հարևան աշտարակը: Այն լուռ ու մե-

նակ էր թվում, բայց այնտեղ ընկերն էր կանգնած: Նրա ստվերը հազիվ էր նշմարվում: Այնպես խիստ և ազդու էր այդ ստվերը, որ Արսենը մի պահ նախանձեց, բայց և իսկույն մտածեց, որ հեռվից ինքն էլ է այդպես երևում, ինքն էլ է այդպես ազդու: Էլի րոպեներ անցան: Այդ րոպեները անվերջ փսփսում, պայմանավորվում էին իրար հետ ու ժամեր դառնալով՝ թաքուն թռչում, հեռանում էին աշտարակից: Եվ ահա անտառի հեռավոր ծայրին, մութ ամպերի միջից ինչ-որ մեկը ճգնում էր դուրս գալ ու կտցահարելով լուսե ճեղքեր էր բացում մութ հորիզոնում... Այդ ընթացքում Արսենը մի քանի անգամ մտքով թռավ իր հայրենիքը, զարմանալի արագությամբ անցավ Երևանի փողոցներով և հանդիպեց մտերիմ ընկերներին: Նա, իհարկե, շատ էր շտապում, բայց հասցրեց նրանց պատմել բանակի և իր ծառայության մասին: Նա ասաց, որ ինքը հիմա շատ բաներ է սովորել, որ առաջ բոլորովին չգիտեր, օրինակ՝ արագ հագնվել, գեղեցիկ քայլել և... Բայց ժամանակ չկար: Նա վազելվազ ետ եկավ՝ վախենում էր պահակակետն անպաշտպան թողնել: Լուսանում էր: Նա հաղթահարել էր գիշերն ու հասել էր լուսաբացին և հիմա սպասում էր: Ահա և հեռախոսի զանգը: Հենց այդ պահին չքացավ ամբողջ գիշերվա լռությունն ու մենակությունը:

— Ալո՛, լսո՛ւմ եմ...

— Դե՞, ինչպե՞ս է, լավ երևո՞ւմ է,— հարցրեց մի խիստ ձայն:

Հոգնած աչքերը կրկին ստուգեցին պարիսպները: Արևի շողերը լարերի պես ձգվել էին պարիսպների մի ծայրից մյուսը:

— Լա՛վ է,— ասաց նա: Եվ ուրախացավ, որ լավ է:

Նրա ձայնը հպարտ ու հաղթական հնչեց, և ինքն էլ զարմացավ, որ անքուն գիշերից հետո կարողացավ այդպես խրոխտ զեկուցել:

— Կարո՛ղ ես իջնել,— լսվեց հրամանը:

Արսենը ուղղեց ավտոմատն ու կամաց իջավ: Ճանապարհին հանդիպեց գիշերային հերթափոխի իր ընկերոջը: Սա էլ ճիշտ այնքան էր կանգնել, որքան ինքը: Նրա անունը Լյոշա էր: Նա էլ էր քսան տարեկան և հեռու քաղաքից էր բանակ եկել: Հաճախ, մութն ընկնելուն պես, նրանք միասին բարձրանում էին աշտարակները և լուսաբացին միասին վերադառնում: Նրանք մոտեցան, հավասարվեցին: Նրանք հոգնած հայացքներով ողջունեցին իրար ու երկուսով համաչափ քայլեցին եղյամապատ տախտակամածով:

Զորանոցում նրանք իսկույն հանձնեցին զենքերը ու շտապեցին ճաշարան: Ճերմակ կիսախալաթ հագած խոհարարը պատուհանի գոգին երկաթյա կլոր կտրիչով կարագ էր կտրում: Դրանք փոքրիկ, դեղին լուսինների էին նման, որ նա շարում էր սկուտեղին: Թվում էր, թե խոհարարը վերջին լուսնիկը կտրելուց հետո կբացի պատուհանն ու այդ բոլորը շաղ կտա առավոտյան երկնքի կապույտին և շուրջը գիշեր կդառնա: Բայց երբ խոհարարը կտրեց վերջին լուսնիկը, պատուհանի կողմն էլ չնայեց: Նա երկու բաժակ կակաո բերեց ու երկու կլոր կարագ: Ապա հացը կտրելով, հարցրեց.

— Ինչպե՞ս էր, գիշերը ոչինչ չպատահե՞ց:

— Ոչի՛նչ,— պատասխանեց Լյոշան...

Նրանք կերան ու վեր կացան, նայեցին խոհարարին.

— Շնորհակալությո՛ւն, Էլմա՛ն...

Էլմանը ժպտաց: Նա քիչ էր խոսում, նա սիրում էր ժպտալ:

— Բարի գիշե՛ր,— ասաց Արսենը:

— Բարի գիշե՛ր,— ասաց Լյոշան:

Էլմանը նորից ժպտաց, այս անգամ նրա համար, որ առավոտյան «բարի գիշեր» են ասում:

— Բարի գիշե՛ր, տղանե՛ր...

Ընկերները ննջարան մտան, պառկեցին: Տարուց ավելի նրանք իրար կողքի էին քնում և քնելուց առաջ միշտ խոսում էին ինչ-որ բանի մասին, որ թվում էր, թե դեռ չի խոսվել: Բայց այսօր կարծես էլ ոչինչ չկար խոսելու: Նրանք մի պահ լռեցին: Լյոշան պոկեց օրացույցի թերթիկը:

— Սեպտեմբերի մեկն է,— ասաց նա:

Արսենը հանկարծ թեքվեց նրա կողմը:

— Հիշո՞ւմ ես դպրոց գնալու առաջին օրը,— հարցրեց նա:

— Տասնչորս տարի առաջ էր,— ասաց Լյոշան,— մեծ պայուսակ ունեի, նկարազարդ կազմով այբբենարան:

— Գիտե՞ս,— հանկարծ աշխուժացավ Արսենը,— իմ այբբենարանի մեջ մի զինվոր կար նկարած, չգիտեմ ո՞վ էր ինձ ասել, որ նա գնդապետ է, և ես միշտ երազում էի գնդապետ դառնալ:

— Հիմա՞ էլ,— հարցրեց Լյոշան՝ նայելով ընկերոջը:

Նա ուզում էր ասել, որ զինվոր լինելը խաղ չէ՝ փայտե ձիով ու ավտոմատով: Բայց Արսենը պատասխանեց.

— Իհա՜րկե, ճի՛շտ այդպես...

Նա դիտմամբ զինվորական կարգով պատասխանեց: Ինքը հիմա իսկական զինվոր էր: Նրանք նայեցին իրար ու հարազատի պես ժպտացին:

— Բարի գիշե՛ր,— ասաց Լյոշան:

— Բարի գիշե՛ր...

Ու հոգնած քնեցին երկու զինվոր ընկերները:

# ՎՈԼՖԳԱՆԳ ԲՈՐԽԵՐՏ

*Գերմանացի նշանավոր գրող Վոլֆգանգ Բորխերտի կյանքը եղել է կարճատև ու լի դառնություններով (1921—1947)։ Քսանամյա տաղանդավոր պատանին ստիպված է լինում մեկնել ռազմաճակատ։ Այստեղ նա վիրավորվում է, իսկ ապաքինվելուց հետո, հակաֆաշիստական տրամադրությունների համար բանտարկվում ու դատապարտվում մահվան։ Սակայն նրան «ներում» են շնորհում և «մեղքը քավելու համար» նորից ռազմաճակատ ուղարկում։ Բայց շատ շուտով Բորխերտը կրկին բանտ է ընկնում։*

*Նա բանտից ազատվում է միայն հիտլերյան Գերմանիայի պարտությունից հետո։ Պատերազմն ու բանտերը վերջնականապես քայքայել էին Բորխերտի առողջությունը, և նա գրում էր ծանր հիվանդ վիճակում, հաճախ անկողնուն գամված, արհամարհելով քաղցն ու ցուրտը։ Նա շտապում էր մարդկանց ասել այն ամենը, ինչ ինքը մտածում էր պատերազմի ու պատերազմ սանձազերծողների մասին։ Նրա հերոսները պատերազմի զոհերն են, մարդիկ, որոնք զրկվել են հարազատներից, մնացել անօթևան, կորցրել երջանկությունը, դարձել հաշմանդամ. դրանք ծերացած երիտասարդներ են ու մանկություն չտեսած երեխաներ։ Այդպիսիներից են ստորև տպագրվող «Գիշերը առնետները քնում են, իհարկե» պատմվածքի հերոսները։*

## ԳԻՇԵՐԸ ԱՌՆԵՏՆԵՐԸ ՔՆՈՒՄ ԵՆ, ԻՀԱՐԿԵ

Ամայի պատի մեջ մնացած փուչ պատուհանը կարծես հորանջում էր իրիկնային արևի կապտակարմիր ճառագայթների մեջ: Քանդված, սևպած ծխնելույզի քարերի միջև փայլփլում էր փոշու ամպը: Մոխրակույտը պլշել էր:

Նա փակեց աչքերը, միանգամից ամեն ինչ մթնեց: Զգաց, թե ինչպես մեկը եկավ ու կանգնեց իր առջև: Մութ էր ու լուռ: «Բռնըված եմ»,— մտածեց նա, իսկ երբ բացեց աչքերը, տեսավ երկու ոտք՝ աղքատիկ տաբատով: Ոտքերը ծուռ էին, և նրանց արանքից տղան նայեց հեռուն: Նա համարձակվեց հայացքը բարձրացնել տաբատից վեր ու տեսավ, որ իր առջև կանգնողը ծեր մարդ է: Նրա ձեռքին մի զամբյուղ կար և դանակ, իսկ եղունգները հողոտ էին:

— Դու այստեղ հանգիստ քընո՞ւմ ես,— հարցրեց մարդը, նայելով ցած, տղայի կարճ կըտրած, խիտ մազերին:

Յուրգենը ծուռ ոտքերի արանքից նայեց արևի կողմն ու ասաց.

— Ո՛չ, ես չեմ քնում, ես հսկում եմ:

— Ահա թե ի՞նչ,— ուսերը վեր քաշելով ասաց մարդը,— դրա համա՞ր ես այդ մեծ փայտը ձեռքիդ պահում:

— Այո՛,— եռանդուն պատասխանեց Յուրգենը, ամուր բռնելով փայտը:

— Իսկ ի՞նչ ես հսկում:

— Չեմ կարող ասել,— տղան սեղմեց փայտը:

— Երևի փող ես պաստակում, հա՞,— ասաց մարդը, ցած դրեց զամբյուղն ու տաբատի ծալքով մաքրեց դանակը:

— Ո՛չ, փողի համար չէ,— ասաց Յուրգենը արհամարհանքով,— բոլորովին ուրիշ բան է:

— Իսկ ի՞նչ է:

— Չեմ կարող ասել, ուրիշ բան եմ հսկում:

— Դե՛, եթե չես ուզում ասել, ես էլ չեմ ասի, թե ինչ ունեմ զամբյուղիս մեջ:

Մարդը ոտքով զարկեց զամբյուղին և ծալեց դանակը:

— Ես կարող եմ ասել, թե ինչ կա ձեր զամբյուղում,— արձագանքեց Յուրգենը արհամարհանքով,— ճագարի կեր:

— Սատանա՛ն տանի, այո՛,—



ասաց մարդը հիացած,— ա՜յ թե ճարպիկն ես: Քանի՞ տարեկան ես:

— Ինը:

— Տես է՜, ինը, ուրեմն դու գիտես, թե որքան կանի երեք անգամ ինը:

— Պարզ է,— պատասխանեց Յուրգենը և ժամանակ շահելու համար ավելացրեց.— Այդ շատ հեշտ է,— նա նայեց ծուռ ոտքերի արանքից, նայեց հեռուն,— երեք անգամ ինը, այդպես չէ՞,— հարցրեց նա,— քսանյոթ: Ես անմիջապես գլխի ընկա:

— Ճիշտ է,— ասաց մարդը,— ես հենց այդքան ճագար ունեմ:

— Քսանյո՞թ,— բերանը կլորացնելով հարցրեց Յուրգենը:

— Եթե ուզենաս, դու կարող ես նրանց տեսնել, նրանցից շատերը դեռ փոքր են: Դու ուզո՞ւմ ես ճագար ունենալ:

— Ես չեմ կարող: Ես պետք է հսկեմ,— ասաց Յուրգենը անհաստատ ձայնով:

— Անընդհա՞տ,— հարցրեց մարդը,— գիշե՞րն էլ ես հսկում:

— Այո՛, գիշերն էլ, ամբողջ ժամանակ, միշտ, շաբաթ օրվանից սկսած,— մրմնջաց տղան:

— Իսկ դու տուն չե՞ս գնում, չէ՞ որ պետք է մի բան ուտես:

Յուրգենը բարձրացրեց քարը, որի տակ դրված էր կես հաց և թիթեղյա մի տուփ:

— Դու ծխո՞ւմ ես,— հարցրեց մարդը, —երևի ծխամորճ կունենաս:

Յուրգենն ավելի ամուր բռնեց փայտը և երկչոտությամբ ասաց.

— Ես փաթաթում եմ, ծխամորճով ծխել չեմ սիրում:

— Ափսո՜ս,— ասաց մարդը, կռանալով զամբյուղի վրա,— դու կարող ես ճագարներին նայել, ամենից առաջ փոքրիկներին: Գուցե կուզենայի՞ր նրանցից մեկն ընտրել քեզ համար: Մի՞թե չես կարող այստեղից հեռանալ:

— Ո՛չ,— պատասխանեց Յուրգենը տխրությամբ,— ո՛չ, ո՛չ:

Մարդը բարձրացրեց զամբյուղը և պատրաստվեց գնալ:

— Դե՛, եթե դու այստեղ պիտի մնաս... ափսո՜ս,— ասաց նա և փորձեց հեռանալ:

— Եթե ոչ ոքի չեք ասի,— ասաց Յուրգենը,— մի քիչ մո՛տ եկեք: Առնետների պատճառով է, որ չեմ կարող հեռանալ:

Ծուռ ոտքերը մի քայլ ետ եկան:

— Առնետների պատճառո՞վ...

— Այո՛, չէ՞ որ նրանք ուտում են մեռածներին, դրանով են ապրում:

— Իսկ ո՞վ է քեզ այդպիսի բան ասել:

— Մեր ուսուցիչը:

— Եվ դու հսկում ես առնետների՞ն,— հարցրեց մարդը:

— Ոչ թե նրանց,— կամացուկ ասաց Յուրգենը,— այլ եղբորս, նա պառկած է հենց այստեղ, ներքևում:— Յուրգենը ցույց տվեց փլված պատերի միացման տեղը:— Մեր տան վրա ռումբ ընկավ: Միանգամից լույսերը հանգան, նա էլ հանգավ: Մենք նրան ձայն տվեցինք... Ինձանից փոքր էր:

Մարդը վերևից նայեց նրա կարճ կտրած խիտ մազերին և հանկարծակի ասաց.

— Մի՞թե ձեր ուսուցիչը չի ասել, որ գիշերն առնետները քնում են:

— Ո՛չ,— շշնջաց Յուրգենը, և նրա դեմքի վրա նկատվեց հոգնածություն,— այդպիսի բան նա մեզ չի ասել:

— Դե՛,— ասաց մարդը,— էլ ի՞նչ ուսուցիչ է, երբ այդ էլ չգիտե: Գիշերն առնետներն, իհարկե, քնում են: Գիշերը դու կարող ես հանգիստ տուն գնալ: Գիշերը, երբ մութն ընկնում է, նրանք քնում են:

Յուրգենն իր փայտով փոքրիկ փոսիկներ էր անում մոխրակույտի վրա ու մտածում. «Փոքրիկ փոսիկները անկողիններ են, փոքրիկ-փոքրիկ անկողիններ»:



— Գիտե՞ս ինչ,— ասաց մարդը, որի ծուռ ոտքերը շատ անհանգիստ էին,— ես հիմա շտապ կերպով կկերակրեմ ճագարներին ու, երբ մութն ընկնի, կգամ քեզ

*կվերցնեմ: Գուցե նրանցից մեկին հետս բերեմ, մի փոքրիկի, ի՞նչ ես կարծում:*

*Յուրգենը փոքրիկ փոսիկներ էր թողնում մոխրակույտի վրա և նըկարում էր ճագարներ՝ սպիտակ, մոխրագույն ճագարներ:*

*— Ես չգիտեմ,— ասաց Յուրգենը, նայելով նրա ծուռ ոտքերին,— թե ինչպես նրանք գիշերը քնո՞ւմ են...*

*Մարդը քանդված պատի վրայով անցավ փողոցը:*

*— Իհարկե, եթե ձեր ուսուցիչը այդ էլ չգիտե, էլ ինչո՞ւ է ուսուցչություն անում:*

*Յուրգենը ոտքի ելավ ու հարցըրեց.*

*— Ես կարո՞ղ եմ մի ճագար ունենալ, գուցե սպիտակ:*

*— Թերևս,— ասաց մարդը հեռանալով,— բայց դու պիտի այստեղ սպասես ինձ, հետո մենք միասին տուն կգնանք: Գիտե՞ս ինչ, ես հայրիկիդ կասեմ, թե ճագարի համար ինչպես են բուն պատրաստում: Այդ անհրաժեշտ է իմանալ:*

*— Այո՛,— կանչեց Յուրգենը,— ես կսպասեմ: Ես դեռ պիտի հըսկեմ մինչև մութն ընկնի: Ես կըսպասեմ անպայման: Տանը մենք տախտակներ ունենք, արկղի տախտակներ:*

*Սակայն մարդն այլևս չլսեց: Նա քայլում էր արևի կողմը, որն արդեն շառագունել էր մթնշաղի հետ: Յուրգենը տեսնում էր, թե ինչպես արևի լույսը շեղորեն ձգվում է նրա ոտքերի արանքով: Այնքան ծուռ էին այդ ոտքերը, որ քայլելիս ձեռքի զամբյուղը ճոճվում էր այս ու այն կողմ: Ճագարի կեր կար զամբյուղի մեջ, ճագարի կանաչ կեր, որը մոխրավուն էր դարձել այրված փլատակների մոխրից...*

*Գերմ. թարգմ.*
*ՆՇԱՆ ԳԵՎՈՐԳՅԱՆԻ*

*Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ*

# Դ Պ Ր Ո Ց
# ԱՌԱՆՑ ԶԱՆԳԻ

Դպրոցը հաստաբուն կաղնու տակ էր, ու երեխաներն այնտեղ էին հավաքվում: Զանգի չէին սպասում, դպրոցը զանգ չուներ: Չուներ նաև շենք, դասասենյակներ, սեղան-նստարան: Ուսուցչանոց ևս չուներ:

Երեխաները հավաքվում էին մեծ կաղնու տակ, որ գրել-կարդալ սովորեն, գումարեն ու հանեն, պատմության դասեր առնեն ու երգել նույնպես սովորեն:

Կաղնին «Պետրուսի բլրակի» վրա էր: Իսկ բլրակը բոլորովին էլ բլուր չէր, այլ կղզյակ՝ չորս կողմը ճահճուտ, ապա անտառներ՝ խիտ ու անանցանելի:

Այստեղ էին հավաքվել շրջակա բնակավայրերից, բոլորը, ովքեր հասցրել էին փախչել, երբ եկան ֆաշիստները և սկսեցին ավերել, կոտորել՝ մեծ ու փոքր չհարցնելով:

Եկել էին ընտանիքներով՝ տղամարդիկ ու կանայք, իրենց երեխաներով: Եկել էին ո՛չ միայն պատսպարվելու, այլև պայքարելու: Պատերազմը սկսվելուց հազիվ մեկ-երկու շաբաթ անց, այնտեղ՝ Բրեստի մարզում, ծնվեց առաջին պարտիզանական ջոկատներից մեկը, որը օրը օրին մեծանում էր: Ջոկատը կրում էր Մ. Ի. Կալինինի անունը:

Բոլորը, ովքեր կարող էին զենք կրել, մարտնչում էին ֆաշիստների դեմ, հարձակվում էին խճուղիներով անցնող հիտլերականների վրա, պայթեցնում էին երկաթուղագծերը, դարաններ էին սարքում, խափանում զավթիչների պլանները, կապ պահպանում շրջակա գյուղերի հետ:

Տղամարդիկ կռվում էին, իսկ կանայք ու երեխաները օգնում էին նրանց: Ով ինչպես կարողանում էր, ինչքան հնարավոր էր: Այդպես անցավ առաջին երկու տարին, հետո հրաման եղավ.

— Դպրոց բացել...

Անտառային դպրոցի առաջին դասը կայացավ հաստաբուն կաղնու տակ, 1943-ի ուսումնական տարվա սկզբին: Եվ առաջին բանը, որը սովորեցին առաջին դասարանցիները գրել, այս էր. «Մա՛հ ֆաշիստներին»: Գրատախտակ ու կավիճ չունեին: Գրում էին փայտիկով, մանրահատիկ ավազի վրա՝ «Մա՛հ ֆաշիստներին...»

Դպրոցը ղեկավարում էր ընկեր Կարապետյանը՝ քսանհինգամյա մի կոմերիտուհի, շնորհալի մանկավարժ: Ամուսինը ջոկատի հիմնադիրներից էր, պարտիզանական դասակներից մեկի հրամանատար: Նա իր մարտական առաջադրանքը կատարելով, անտառային քողտիկ էր վերադառնում լուսաբացին, իսկ քիչ հետո կինը նրան հրաժեշտ էր տալիս ու գնում իր մարտական առաջադրանքը կատարելու՝ երեխաներին սովորեցնելու այբուբեն և խիզախության ոգի հաղորդելու: Չորս-բոլորը պայթում էին արկերը, երկնքում ոռնում էին խաչակիր ռմբակոծիչները, ֆաշիստները պարբերաբար «սանրում» էին անտառը, իսկ նրանք՝ հիսուն աշակերտ, դաս էին սովորում, նախադասություն գրում ու վերլուծում:

Մի օր էլ ջոկատի հրամանատարը հանդիսավորությամբ երրորդ դասարանցիներին նվիրեց հայրերի ձեռքով պատրաստված մի գրատախտակ:



Գրատախտակը կախեցին կաղնուց: Նրանցից մոտիկ ճարճատում էր խարույկը, որ երեխաները չմրսեն:

Ահա դասն ավարտվեց: Խարույկին մոտեցավ մի երիտասարդ, ուսին՝ ո՛չ մեծ մի ծանրոց, և բարձր, որպեսզի երեխաներն էլ լսեն, ասաց.

— Ընկե՛ր Կարապետյան, ձեզ նվեր եմ բերել...

Երեխաները շրջապատեցին նրան: Քեռի Միխայիլը բացեց ծանրոցը, կգուշաբար ետ տարավ փաթեթն ու հանդիսավորությամբ հանեց և ուսուցչուհուն հանձնեց մի «Այբբենարան», ապա՝ հինգ տետրակ և երեսուն մատիտ.

— Առայժմ այսքանը հաջողվեց, ներող եղեք...

Մեկ «Այբբենարան» — ամբողջ դասարանի և հինգ տետր ու երեսուն մատիտ՝ ամբողջ դպրոցի համար:

Շուտով նրանք սկսեցին նաև կարմիր վկայականներ կրել: Գերմանական պատառոտված պարաշյուտների մետաքսը անտառապտուղներով ներկեցին կարմիր և դրանցից վկայականներ ձևեցին:

Անցավ ժամանակ և թուղթը շատացավ, դասագրքեր էլ գտնվեցին, մատիտներն այլևս կիսելու կարիք չեղավ:

Երբ ուսումնական տարին ավարտվեց, ջոկատի հեռագրչուհին կետ ու գծով Մոսկվա հաղորդեց մի նախադասություն, որ շտաբում վերծանեցին այսպես. «...անտառային դպրոցն ուստարին փակեց 84 տոկոսով»:

Ջոկատի մարտական պեկույցում թվեր շատ կային՝ ոչնչացված ֆաշիստների, պայթեցված ռազմագնացքների ու կամուրջների, սարքված ծուղակների և պարտիզանների գործողությունների վերաբերյալ: Բայց շտաբում հավանաբար ամենամեծ տպավորությունը թողել էր այդ երկանիշ թիվը, որի տակ կարմիր մատիտով ընդգծել էին:

Ամառային ամիսներին դպրոցականները պարապ չէին մնում: Նրանցից փոքրերը հատապտուղներ, սունկ, բուժիչ դեղաբույսեր էին հավաքում, մեծերը հսկում էին խճուղիների մոտ կամ թափանցում էին մոտակա գյուղերը, որ լուրեր բերեն, թե ինչ են մտադրվում ֆաշիստները: Իսկ երբ ջոկատ եկան Սովետական Միության հերոս Կովալևը և նրա պարաշյուտիստ ընկերը, երեխաները մի նոր հանձնարարություն ևս ստացան. ֆիկտիվ դաշտ պատրաստել: Այդ այն ժամանակ, երբ ֆաշիստները հազիվ տասը կիլոմետրի վրա էին: Եվ նրանք ֆիկտիվ դաշտ պատրաստեցին ու սկսեցին մարզվել: Դա պետք եկավ առաջիկա մարտերի համար:



Պատերազմի հաղթական ավարտից անցել է քառորդ դար: Անտառային դպրոցի երբեմնի սաներից ոմանք իրենք հիմա ուսուցիչներ են, ոմանք դասախոսներ՝ բարձրագույն դպրոցներում: Հայրենական պատերազմին նվիրված Մինսկի թանգարանում, ցուցափեղկի տակ ցուցադրված է մի փաստաթուղթ. այն ժամանակին տրվել է Ալինա անունով մեկին, անտառային դպրոցի երրորդ դասարանը «գերազանց» գնահատականներով ավարտելու մասին: Ինչ կասկած, որ Ալինան էլ հետագա ուսումը շարունակել է «գերազանց» գնահատականներով և կյանքում գտել իր արժանավոր տեղը:

Ինչ վերաբերում է անտառային դպրոցի ղեկավար Ֆ. Պ. Կարապետյանին, ապա ինչպես պետք էր սպասել, նա վաստակավոր մանկավարժ է և ապրում է Ռոստովի մարզի Շախտի քաղաքում:

Եթե ձեզ վիճակվի այցելել այդ քաղաքը, ապա գնացեք Սիգնալնայա փողոցի № 53 տունը, և նա իր հարկի տակ կընդունի ձեզ և ուրիշ շատ ու շատ հետաքրքիր բաներ կպատմի անտառային դպրոցի մասին, որ հաստաբուն կաղնու տակ էր:

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

*ՄԻՔԱՅԵԼ ՀԱԿՈԲՅԱՆ*

# ՄԱՅԻՍԻ ԾՐՋԱՆԱՁԵՎ ԵՐԵԿՈՆԵՐԸ

ԴԱՎԻԹ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Նանարն ինձանից մեծ էր մի տարով, և երբ հանդիպում էինք, ուղիղ աչքերիս մեջ էր նայում ու լռում, սպասելով, որ առաջինը ես բարևեմ: Մի ժամանակ դա ինձ շփոթեցնում կամ բարկացնում էր, բայց հետո սովորեցի ուշադրություն չդարձնել: Եվ մենք ընկլսեցինք չբարևել միմյանց: Խռովելու մասին խոսք անգամ լինել չէր կարող. մենք պարզապես չէինք բարևում, և մեր կյանքում ոչինչ չէր պակասում դրանից: Նույնիսկ մի տեսակ խորհրդավորություն էր ծագել. ամեն օր հանդիպել առանց բարևի, կարծես ոչ մի վայրկյան չենք բաժանվել իրարից:

Նա ասում էր, թե իր մորեղբայրը՝ կարճահասակ քեռի Հրանտը, խոստացել է անպայման «Օրլյոնոկ» նվիրել, բայց մի գլուխ հետաձգում է: Եվ հետաձգելու պատճառն, իբր, մեր փողոցն էր, որտեղ փոշի էր ու քար, թեև կանայք ամեն առավոտ ու երեկո ավելներով ջուր էին շաղ տալիս: Բացի դրանից, անհարթ էր մեր փողոցը, առանց որևէ դժվարության կարելի էր շուռ գալ հեծանիվով հանդերձ, քերծել ծունկը, արմունկը կամ ջարդվածք ստանալ:

Անձամբ ես ոչ մի ձգտում չունեի դեպի հեծանիվները: Նանարը չարախնդում էր. «Քշել չգիտես՝ դրանից է...» Իսկ ես հարց էի տալիս. «Դու գիտե՞ս որ...» Նա պատասխանում էր, թե չգիտե, բայց հեշտությամբ կարող է սովորել: «Ինքս էլ,— ասում էի նրան,— հեշտությամբ կարող եմ սովորել: Բայց թե ցանկություն չունեմ»: Նանարն ուսերը թոթվում էր ու լռում, իսկ ես ոչ մի գնով չէի ցանկանում բացահայտել իմ նվիրական, թաքուն երազանքը՝ ոչ թե ինչ-որ հեծանիվ ունենալ, այլ ազնվացեղ արաբական նժույգ, անունն էլ՝ Սոսափ: Թե ինչու Սոսափ, չգիտեմ, բայց այդ անունն ինձ դուր էր գալիս: Թեթև, օդեղեն մի զգացում էր առաջացնում այդ բառը:

Եվ այսպես, մի ամբողջ աշուն, մի ամբողջ ձմեռ, մի կես գարուն Նանարն ինձ ձանձրացրեց հեծանիվի մասին իր երկար-բարակ խոսակցություններով: Մի ամբողջ աշուն, մի ամբողջ ձմեռ, մի կես գարուն, աշխարհից ու Նանարից գաղտնի, երազեցի ու ոչ մեկին ոչ մի բառ չասացի իմ Սոսափի մասին: Ու մի օր (մայիսյան տոներից անմիջապես հետո) Նանարը վազքով եկավ.

— Հեծանիվս մի քանի օրից կլինի,— ասաց նա՝ չբարևելով:

— Ո՞նց չէ,— նույնպես առանց բարևելու՝ ծոր տվի ես:

Նանարը, իր սովորության համաձայն, ուսերը թոթվեց, բայց չլռեց: Ու ես հասկացա, որ գործը լրջանում է:

— Փողոցն ասֆալտելու են,— հայտարարեց նա:

— Ե՞րբ են սկսելու,— հոգոց հանեցի ես:

— Վաղվանից:

Ասֆալտեցին: Սաղարթների կանաչը գունաթափվեց: Քառակուսի շնիկներ ծնվեցին, գծվեցին կլասի վանդակները: Որպես եզրափակում՝ Նանարի «Օրլյոնոկ»-ը հայտնվեց: Երբ քեռի Հրանտը եկավ Նանարին հեծանիվ վարել սովորեցնելու, բոլորը հավաքվեցին նրանց շուրջը: Միայն ես էի, որ նայում էի պատշգամբից: Հիմարություն կլիներ կարծել, թե նախանձում էի: Ուղղակի Սոսափիս մասին էի մտածում և տեսնում, թե Նանարը ինչպես է տեղավորվում թամբին, ինչպես է քեռին, հեծանիվի կողքից վազելով պահում ղեկը: Մայիսյան թափանցիկ երեկո էր, կարճահասակ, աշխույժ, բեղավոր քեռին, ասֆալտապատ փողոցը մի զարմանալի ներդաշնակություն էին կազմում, պսպղում էր հեծանիվի նիկելապատ մարմինը: Քամին Նանարի մազերը ծածանում էր:

— Վիգե՜ն,— կանչեց Նանարը՝ մեր պատշգամբին հավասարվելով:

— Ի՞նչ կա,— հարցրի ես:

— Քշել չե՞ս ուզում:

— Չէ՛,— ասացի,— ի՞նչ մեծ բան է որ:

Եվ աչքերս փակեցի, չտեսնելու համար, թե ինչպես է նա ուսերը թոթվում: Իհարկե, մտածեցի ես, նա երջանիկ է: Ես էլ կարող էի, իմ Սոսափին հեծած, այսպես արշավել, սուրալ անապատներով, և ավազափոշին կբարձրանար նժույգիս սմբակների տակից:

## ՄԱՆՈՒՇԱԿՆԵՐ ԵԼԱՆ ՀՈՂԻՑ

ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՋՅԱՆ

Կամուրջ դրի ջրի վրա,
Անձրևն եկավ
Ու այն տարավ:
Ես լաց եղա,
Ես լաց եղա,
Արևն ելավ,
Լացս տարավ:
Ծիածանի գույներն ելան,
Ծիծաղեցի:
Ու չիմացա՝
Իմ ծիծաղի՞ց,
Թե՞ արևի պայծառ շողից,
Մանուշակներ ելան հողից:

## ՇՈՒՆՆ ՈՒ ԳԱՅԼԸ

*ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ*



Գազաններին ստեղծողը
Շատ արդար էր ու շատ բարի:
Ահա և նա չափեց-ձևեց
Ու Շներին մեծ ուժ տվեց,
Իսկ Գայլերին՝ հոտառություն:

Գայլը դաշտում տեսավ Էշին,
Խեղդեց-ճաղթեց, հպարտացավ,
Բայց հանդիպեց երբ Գոմեշին,
Տեսավ, որ գործը բարդացա՜վ.
Գոմեշն այնպես պոզահարեց,
Որ խեղճ Գայլի սիրտը մարեց:
Ու մտածեց Գայլը երկար,
Որ ուժեղից ուժեղն էլ կար:

Երբ որ Գայլը եկավ ուշքի,
Զարկեց դուռը ստեղծողի

*Եվ ես մտովի ինձ ու Սոսափին տեսա անապատում: Մենք սլանում էինք դեպի օազիս: Կիսախուփ կոպերի տակ կամ երևակայության մեջ, որտեղ ամեն ինչ մեր ուզածի պես կարող ենք ունենալ, տեսա ծիու ծածանվող բաշը: Եվ հանկարծ զգացի, որ նրա սմբակների տակ գետինն աստիճանաբար պնդանում է, զգացի, որ անհետանում են փոշու քուլաները, պայտերի աղմուկ է լսվում և ավազուտները փոխվում են ասֆալտապատ փողոցի: Ես ու Նանարն իմ Սոսափին հեծած՝ վարգում ենք, իսկ մեր կողքով ընթանում է քեռի Հայկը...*

*Պատշգամբից ներքև թռա: Հետաքրքրասերները ցրվել էին, միայն Նանարն ու իր մորեղբայրն էին մնացել: Նանարն արդեն ինքնուրույն էր քշում: Մոտեցա նրան:*

*— Շնորհավոր լինի,— ասացի ես: Սիրտս տխուր էր:*

*— Շնորհակալ եմ,— ասաց Նանարը:*

*— Հեծանիվ քշել չե՞ս ուզում,— սիրալիր առաջարկեց նրա քեռին:*

*— Չէ՛,— գլուխս օրորեցի ես,— իմ Սոսափն ինձ հերիք է:*

*— Ո՞վ:*

*Նանարի ձայնն էր: Ես սարսափահար սեղմեցի բռունցքներս: Մի լրիվ աշուն, մի լրիվ ձմեռ, մի կես գարուն իմ գաղտնիքը թաքցրել էի աշխարհից և Նանարից: Ես անուն էի դրել նժույգիս, չափչփել էի Սահարան, Ռուբ-էլ-Խալին, Թառ անապատը, և ահա... Մի պահ կարծեցի, որ գաղտնիքս մատնելով, զրկվում եմ նրանից: Թվաց, որ սրանից հետո չեմ հավատալու իմ արկածներին, նժույգիս գոյությանը: Որ Սոսափ անունն այլևս օդեղեն չի լինելու:*

*— Ոչինչ,— հուսահատորեն թափ տվի ձեռքս,— խոսում եմ:*

*— Բայց մի բառ ասացիր,— պոկ չեկավ Նանարը,— «հոսանք» թե «Սոսափ»...*

*— Ականջդ է կանչել,— ասացի,— պատահում է, չէ՞, երբ մարդու ականջն է կանչում:*

*Նանարը տեղավորվեց թամբին: Սեղմեց ոտնակները: Սկսեց պտույտներ գործել: Երեկոն արդեն քըսվում էր գետնին, ստվերները երկարել էին այնքան, որքան կարող են: Շուտով, շատ շուտով պիտի բոլորովին մթներ:*

*— Դու հեծանիվ չե՞ս սիրում,— հարցրեց քեռի Հրանտը:*

*— Ոչ այնքան,— ամաչելով պատասխանեցի ես:*

*— Իսկ ես քո տարիքին եղած ժամանակ ամերիկյան մի հին հեծանիվ ունեի: Քշում էի օրնիբուն: Մինչև տասնինը տարեկան քշել եմ:*

*— Եվ ուրիշ բանի մասին չէի՞ք մտածում:*

*— Օրինակ՝ ինչի՞,— հետաքրքրվեց նա:*

*— Ձիերի,— ասացի ես, ու սիրտս սեղմվեց ինձ անհասկանալի ցավից:*

*— Ո՛չ,— ասաց նա:— Այն ժամանակ հեծանիվը հազվագյուտ բան էր քաղաքում: Ես ինձ իսկական ժամանակակից մարդ էի զգում:*

*— Իսկ հիմա քշելը չե՞ք մոռացել:*

*— Ա՜յդ էր պակաս,— նա ժպտաց: Ապա կանչեց.— Նանա՜ր, մո՛տ արի:*

*Նանարը եկավ:*

*— Թույլ կտա՞ս, որ մի երկու պտույտ էլ ես անեմ,— հարցրեց քեռին:*

*Նանարը թույլատրեց: Մենք սկսեցինք դիտել, թե ինչպես է նա հեծանիվ քշում: Իսկ քեռին ութ էր գըծում անիվներով, սլանում էր ձեռքերը տարածած, հե-*



«Հոտառության մեջ ի՞նչ կա որ...
Ուժ տուր, ո՞ւժ է ինձ հարկավոր»:

Եվ այս անգամ ստեղծողը
Էլ ոչ չափեց, ոչ էլ ձևեց,
Շան ուժն առավ, Գայլին տվեց,
Հոտառությունն էլ՝ Շներին:

Տարիներ են եկել-անցել:
Գայլն իր ուժով մինչև հիմա
Էլի նույն Գայլն է մնացել
Նույն սոված ձմեռ-ամառ,
Նույն որսորդի ահ ու մահով,—
Այնինչ Շունը իրեն համար
Ստեղծել է կյանք ապահով՝
Ոչ թե ուժով կամ քրնությամբ,
Այլ նուրբ ու սուր հոտառությամբ:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

տո կամաց ու սահուն շրջաններ էր գործում: Թվում էր, թե նա երեկոն համաչափ ու խնամքով փռում է փողոցի տարածությամբ: Թվում էր, թե կիսախավարի շրջանաձև պաստառներ է սեղմում գետնին:

— Քանի՞ տարեկան է քեռիդ,— հարցրի ես Նանարին:

— Քառասունյոթ թե քառասունութ, լավ չգիտեմ:

— Տարօրինակ է, որ ձի քշելու մասին չի երազել:

— Իսկ դու երազո՞ւմ ես:

— Չէ՛ մի,— ասացի ես,— ես ինձ զգում եմ որպես միանգամայն ժամանակակից մարդ:

Քեռի Հրանտը, ուրախ ու քրտնաթոր, արգելակեց մեր կողքին:

— Տեսա՞ք,— ասաց նա, հետո, վար գալով, շարունակեց.— երբ տասներեք տարեկան էի, ամերիկյան մի հին հեծանիվ ունեցա: Քշում էի օրնիբուն: Երեք օրը մեկ քանդում էի, յուղում ու կարգի բերում: Հետո, կիրակի օրերին, սկսեցի ուղևորվել Աշտարակ՝ տատիս ու պապիս մոտ:

— Նրանք շա՞տ էին ծեր,— ընդհատեց Նանարը:

— Շատ: Ուրեմն՝ քշում էի հեծանիվս Աշտարակ: Կամուրջից հետո եղած զառիվայրով սլանում էի առանց ղեկը պահելու: Գյուղ էի մտնում, շալակում հեծանիվս, որովհետև այնտեղ փողոցներն անհարթ էին: Կարելի էր ընկնել ու ջարդվածք ստանալ:

Նա լռեց:

— Հետո՞,— հարցրի ես:

— Երեկոյան տուն էի վերադառնում:

Նանարն ասաց.

— Հեծանիվով հիմա ո՞ւր կարելի է գնալ:

— Հիմա դժվար է,— միջամտեցի ես,— ավտոմեքենաներ կան: Մեզ թույլ չեն տա:— Եվ ավելացրի.— Դու միայն պատկերացրու, թե քշում եմ անապատով, դեպի օազիս:

Լավ էր, այս անգամ բացատրություն չպահանջեցին: Նանարի քեռին պատմեց, թե ինչպես, երբ 41-ին բանակ են կանչել, հեծանիվով էլ գնացել է հավաքակայան: Այնտեղ էլ թողել է հեծանիվը, որ մեկնումեկը վերցնի ու զբոսնի...

Լրիվ մթնել էր, երբ գնացինք տուն: Ես դարձյալ ելա պատշգամբ: Դարձյալ սկսեցի մտածել ձիերի ու անապատների մասին: Ես չէի կարողանում իմ Սոսափին գտնել: Նա չկար: Նա պահվել էր ինձանից: Ես տեսնում էի Կարակումն ու Մեծ Նեֆուդը և մեր փողոցն էի տեսնում՝ անապատների մեջ, և մեր փողոցն սկսում էր ավազները քողարկել ինձանից: Որտեղից-որտեղ հեծանիվներ էին երևան գալիս և ըսկըսում շրջաններ գործել: Ամեն ինչ դառնում էր շըրջանաձև: Ամեն ինչ դառնում էր գեղեցիկ և, այդ պատճառով էլ, մի քիչ երկյուղալի: Հետո բոլոր հեծանիվները, որ պտտվում էին, դարձան մեկ: Տեսա, որ Նանարը Աշտարակ է գնում: Գնում է նույն ուղղությամբ, ինչ որ ես, երբ Սոսափի հետ սլանում էի դեպի օազիս: Եվ հեծանիվի վրա, այնտեղ, ուր գրված էր «Օռլյոնոկ», առկայծում էր Սոսափ բառը: Ամեն ինչ թեթև էր ու օդեղեն...

Դուրս եկա տնից: Քայլեցի դեպի Նանարենց պատշգամբը: Երեկոյան ժամը ինն էր: Փողոցում շրջանաձև մթություն կար:

— Նանա՜ր,— կանչեցի ես:

Նա հայտնվեց:

— Նանա՛ր,— ասացի մի քիչ անփույթ,— եթե կարող ես՝ հեծանիվդ բեր: Եվ արի, որ սովորեցնես ինձ:

# ՔՆՆՈՒԹՅՈՒՆ

*ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ*



րանից մի քանի օր առաջ ես մի բավականին ստվար ծրար ըստացա՝ առանց հետադարձ հասցեի: Ճիշտն ասած, չզարմացա: Պատահում է. մարդ ես, շտապում ես ու մոռանում: Մի անգամ ես նույնիսկ բարեկամիս հասցեի փոխարեն իմն էի գրել: Նամակս երեք օր քաղաքում պտտելուց հետո, նորից իմ ձեռքը հասավ: Մի ուրիշ անգամ էլ մեր խանգարված ջրմուղի կապակցությամբ շինգրասենյակին գրած բավականին խիստ դիմումս սխալմամբ դրել էի ընկերոջս ուղղված շնորհավորական ծրարի մեջ, իսկ շնորհավորանքի երկտողը ուղարկել շինգրասենյակ:

Ինչևիցե, այդ ուռած ծրարը բացեցի, տեսնեմ՝ աշակերտական տետրից կտրված թերթեր են: Հաշվեցի՝ 7—8 թերթ: Վերջում էլի հասցե չկա, ազգանուն էլ չկա, ոլորապոչ ստորագրությունն է՝ «Սենո. 7-ի «բ» դասարան»:

Այստեղ ես մատս կծեցի. հը՞մ...

Սենոն է, հենց նույն այն Սենոն, որի շարադրության տետրը մի երկու տարի առաջ ես գտել էի օպերայի այգում, նստարանի տակ, և այդ տետրում գրած նրա խոստովանանքին պատմվածքի ձևով՝ զետեղել եմ իմ «19 պատմըվածք» գրքում:

Մի խոսքով, ահա թե ինչ էր գրում նա իր այս նամակում:

Սկզբում քաղաքավարությամբ բարևում էր ինձ, ապա հայտնում, որ իրեն շատ են դուր եկել իմ պատմվածքները, հատկապես իր մասին գրած պատմվածքս, և զարմանում էր, թե ինչպես է իր շարադրության տետրը իմ ձեռքը ընկել: Հետո մի քանի տողով ասում էր, որ ինքը նորից ինքնահոս գրիչների նույն սիրահարն է մնացել, ու հուզված ավելացնում էր, որ դեռ մինչև հիմա էլ տանջվում է իրենց պառավ հարևանուհու կատվին՝ Մաշոյին հիշելիս, որին, մի ինքնահոսի համար, բոլորից թաքուն, տոպրակի մեջ գցելով, տվեց բժշկական ինստիտուտի ուսանողուհի իր քրոջը, որպեսզի տանի նրանց ֆարմակոլոգիական լաբորատորիա՝ մի նոր դեղի փորձարկման համար...

Հետո նա ամոթով ավելացնում էր, որ աշխարհում ոչ ոք չունեցող, միայնակ մնացած իրենց պառավ հարևանուհին դեռ մինչև հիմա էլ փնտրում է իր կորած Մաշոյին և հույս ունի, որ նա մի օր կվերադառնա...

Այսպես տխուր է սկսվում Սենոյի նամակը. ապա նա վշտով լի, ինքնաքննադատաբար ավելացնում է, որ այդ բանից դեռ խիղճը չըթեթևացած, անազնվություն գործելու ոչ մի մտադրություն չունենալով՝ այս անգամ էլի մի ինքնահոսի համար...

Բայց, հետաքրքիր է, ինչո՞ւ եմ ես վերապատմում այնքան անկեղծությամբ գրած նրա այդ նամակը:

Ահա շարունակությունը, որ ես կետադրական մի քանի շտկումներով մեջ եմ բերում այստեղ, բառ առ բառ...

«...Երբ մի երկու շաբաթ առաջ, երեկոյան ընթրիքից հետո, հայրիկս ինձ պարզեց չարաբաստիկ այդ ինքնահոսը, աչքերիս չհավատացի:

— Ի՞նձ...— շունչս կտրվելով ճչացի ես, համարյա քթիս կպցնելով մուգ մորեգույն, ոսկեփայլ կեռիկով անսպասելի նվերը:

Հայրիկս խիստ մարդ է. նա միայն ժպտալու նման մի բան արեց, իսկ մայրիկս հուզմունքից, ըստ իր սովորության, առաստաղին նայելով, սկսեց թարթել խոնավացող աչքերը:

— Տես հա՛, դա էլ չփչացնես,— ասաց քույրս՝ հիշեցնելով Մաշոյի դիմաց ինձ տված իր ինքնահոսը:

— Իսկի էլ չեմ փչացնի,— հուզմունքս խեղդելով՝ ասացի ես:

— Ոչ թե «իսկի», այլ՝ երբե՛ք,— դաժանորեն ուղղեց նա ինձ:

Առհասարակ, չգիտեմ ի՞նչ է ուզում ինձնից այդ Սեդան: Կարծես թե ինքը ոչ մի մեղք չուներ Մաշոյի հարցում:

Ինչևիցե, քիչ հետո, խոհանոց մտա ու հարցրի մայրիկիս, թե այդ ի՞նչ բան էր, որ հայրիկը հանկարծ ինձ նվիրեց այդ ինքնահոսը:

— Լավ սովորելուդ համար,— ասաց նա:— Երեկ, դասղեկ Հարությունյանը հորդ հանդիպելով, շատ է գովել քեզ:

Ուրախությունից գիշերը քունս չտարավ: Իսկ առավոտյան, դասարան մտնելուն պես, հպարտ ու երջանիկ, ցուցադրաբար նայեցի կրծքագրպանիկիցս դուրս ցցված ինքնահոսիս ոսկեփայլ կեռիկին:

Բոլորը շրջապատեցին ինձ. գիտեն ինքնահոսների հանդեպ ունեցած իմ թուլությունը: Բայց նոր ինքնահոսս այնքան հմայիչ էր, որ այս անգամ բոլորը վարակվեցին այդ թուլությամբ:

— Հիանալի՛ բան է... ի՞նչ լավն է... ի՞նչ ես տվել, որտեղի՞ց ես գտել...— վրա էին տալիս ամեն կողմից:

— Ֆրանսիակա՞ն է,— պարծանքով ծոր տվի ես,— հայրիկս է նվիրել:

— Ի՞նչ մակնիշի է:

— «Էգլ»... այսինքն՝ «արծիվ»,— նորից պարծեցա ես:

— Իսկապես որ գեղեցիկ է,— ասաց Բաբկենը:

— Բա ի՞նչ էիր կարծում, մետաղյա մասերն էլ ամբողջովին ոսկուց են,— որպեսզի տպավո-

րությունը ավելի մեծ լինի, ոգեվորված փչեցի ես,— և՛ կեռիկը, և՛ ծայրը... Ո՛չ մաշվել ունի, ո՛չ փչանալ: Գիտե՞ս ոնց կգրի...

— Տո՛ւր մի օր պահեմ, հա՞,— խնդրեց Բաբկենը:

Ես մի պահ կարկամեցի. հիշեցի խեղճ քեռուս թազբեհները. ընկերներիցս տեսնողը, թե՝ «Տուր մի օր պահեմ». վերցնում էին ու ետ տալ չկար: Ինչ հետաքրքիր, հազվագյուտ բան տեսնեն, թե չէ՝ «Տուր մի օր պահեմ»... Ասա ի՞նչ պիտի անես մի օր պահելով: Բայց, դե, Բաբկենին ո՞նց մերժեի. նա գիրք չի թողել իրենց տան գրադարանում, որ ինձ կարդալու տված չլինի:

— Լա՛վ,— ասացի,— վաղը կբերեմ:

Ճիշտն ասած՝ սրտանց չտվի. կարծես թե նախազգում էի, որ վատ բան է պատահելու: Ինքնահոսը տալու հետևյալ օրը Բաբկենը եկավ, բայց վայ այն երեվալուն: Այնպես էր շփոթված, որ ինձ թվաց, թե նորից ուսուցչանոց էին կանչել: Շատ անկարգ տղա է, թափթփված, ցրված. և որ հանկարծ չասաց, թե՝ ինքնահոսդ կորցրել եմ, քիչ մնաց սիրտս ճաքեր:

— Ո՞նց թե՝ կորցրել եմ...— լացս հազիվ զսպելով՝ շշնջացի ես:

Իսկ նա խեղճ-խեղճ.

— Դե լա՛վ,— ասաց,— կաշխատենք այդպիսին գտնել ու վերադարձնել: Ես հորս արդեն ասել եմ:

Որպեսզի տանը չնկատեն ինքնահոսի կորուստը, չորս-հինգ օր ես համարյա պահմտոցի էի խաղում, մինչև որ Բաբկենը բերեց մի... իսկական, ոսկյա ծայրով «Պարկեր» ինքնահոս: Աչքերիս չհավատացի. «Պարկեր» և... ոսկյա ծայրով... Կարիք կա՞ ասելու որ ծնկներս թուլացան ու... չասելով, որ իմ ինքնահոսը հասարակ ինքնահոս էր, դրեցի գրպանս... Դրեցի գրպանս, բայց կորցրի հանգիստս: Մաշոյի տխուր պատմությունը ի՞նչ էր այս անգամվա արածիս համեմատությամբ: Բայց մի անգամ վերցնելուց հետո ինչպե՞ս դառնայի ու ասեի, որ ստել եմ, որ իմ ինքնահոսը հասարակ ինքնահոս էր... Իսկ տանը ուղղակի մի անկյունից մյուսն էի նետվում. տնեցիք նկատեցին, նկատեցին և ինքնահոսը...

Հորս նվիրածը մուգ մորեգույն էր, իսկ «Պարկերը»՝ սև:

— Փոխանակել եմ,— քրթմնջացի ես նոր մի սուտ:

— Նվերը չեն փոխանակում,— սառն ասաց իմ խիստ հայրիկը, իհարկե, ամենևին չկասկածելով, թե ինչ անազնվություն եմ արել:

Այսպես, «Պարկերը» ինձ զրկեց հանգստությունից: Քունը կտրվել էր աչքիցս, ախորժակս փակվել: Քանի-քանի անգամ որոշեցի ետ տալ, բայց քաջություն չունեցա, մինչև որ...

Սկսվեցին տարեվերջի քննությունները...

— Գրեցեք շարադրություն ազնվության մասին,— հայտարարեց ընկ. Աբրահամյանը՝ իմ ամենասիրելի ուսուցչուհին, ոգևորիչ ժպիտը ինձ ուղղած, որովհետև, ինչպես ասում են՝ ես մեր դասարանի ամենալավ շարադրություն գրողն եմ:

Պատկերացրեք իմ վիճակը: Ինձ թվաց, որ ընկ. Աբրահամյանը գիտեր ինձ տանջող գաղտնիքը և որ նրա ժպիտը ոչ թե ոգևորելու ժպիտ էր, այլ հեգնանքի, կշտամբանքի: Ձեռքս սկսեց դողալ, տետրակիս տողերը խառնգարված հեռուստացույցի գծիկների պես հոսում էին աչքիս առջևով: Չէի կարողանում կենտրոնանալ: Ի՞նչ ազնվության մասին կարող էի գրել, ձեռքիս անազնվության ապացույց՝ ոսկեծայր «Պարկեր»-ով: Ահա անցնող րոպեների պես, մեկը մյուսի ետևից տետրերը հանձնելով, դուրս էին գալիս նույնիսկ մեր դասարանի ամենաթույլ աշակերտները: Իսկ ես դեռ ոչ մի բառ չէի գրել: Այդ դեռ ոչինչ: Ամենաահավորն այն էր, որ ինձնից անկախ, աչքս անընդհատ ընկնում էր իր տետրակի վրա կռացած Բաբկենի թիկունքին... Ուզում էի չնայել՝ չէր ստացվում... Ու... հանկարծ, թեթևություն զգացի, այդ այն պահին էր, երբ որոշեցի հենց քննությունից հետո մոտենալ նրան, վերադարձնել ինքնահոսն ու ամեն ինչ խոստովանել: Վա՜յ, այդ ի՞նչ հաճելի բան էր: Պատկերացնո՞ւմ եք, այդպես որոշեցի թե չէ, «Պարկերը» ասես հավկացավ ինձ, հոգիս թեթևացավ, մտքերս զուլալվեցին ու սկսեցի գրել: Ու ինչպե՞ս էի գրում, ինչքա՜ն թեթև, ինչքա՜ն սահուն: Ես դեռ երբեք այդքան հաճույքով չէի գրել շարադրություններս, և երբեք այդքան երջանիկ չէի զգացել ինձ: Մի խոսքով, քննությունից հետո, միջանցքում իսկույն մոտեցա Բաբկենին:

— Վերցրո՛ւ,— ասացի՝ «Պարկերը» նրան պարզելով:

— Իսկ... ինչո՞ւ,— զարմացավ նա:

— Իմ ինքնահոսը հասարակ էր...— ասացի ես՝ ամոթից կարմրելով:

Անսպասելի իմ խոստովանությունից նա սկզբում ապշեց, քարացավ: Սակայն իմ տեսքը այնքա՜ն խղճալի էր, կարեկցանքի արժանի, որ, ինձնից ո՛չ պակաս, նա էլ հուզվեց:

— Ոչինչ,— ասաց,— Սեյրա՛ն ջան, մի՛ վախենա, ոչ ոքի չեմ ասի:— Ու հետո երբ ավելացրեց, թե.— Քո ինքնահոսը կբերեմ, մենք դրա ոսկե ծայրովն էինք փնտրում, իսկ այդպիսին չէր գտնվում,— ամոթից գետինը մըտա, նույնիսկ չկարողացա ասել, որ ինձ այլևս ինքնահոս պետք չէ, որ չբերի...

Իսկ ինչ վերաբերում է արածս այստեղ ու այնտեղ տարածելուն՝ ես հենց նույն օրն իսկ, տանը ինքս խոստովանեցի այս բոլորը,

# ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ № 8213 ՁԵՌԱԳԻՐԸ

*Որքան էլ պատմելու լինենք, մեր այսօրվա դպրոցականները չեն կարող լավ պատկերացնել այն պայմանները, որոնց մեջ գտնվում էին անցած ժամանակների աշակերտները: Միայն անհուն սերը դեպի ուսումն ու գիտությունը նրանց ուժ է տվել տոկալու այդ ամենին և դառնալու պիտանի մարդիկ հայրենիքի համար: Ավելին, նրանցից յուրաքանչյուրը հետագայում միայն ու միայն երախտագիտական խոսքեր է թողել իր ուսուցիչների մասին: Նրանց ուսուցիչներն էլ, իրենց ժամանակի բարքերի համաձայն, իրենց հերթին անցած են եղել նույն փորձություններով: Մեզ է հասել գրավոր մի խոսք, միակը, որով աշակերտը իր բողոքն է հայտնում: Նրա անունը եղել է Հարություն, ապրել է 18-րդ դարում, այսինքն՝ մեծ երգիչ ու բանաստեղծ Սայաթ-Նովայի ժամանակներում:*

*Ինչպես հայտնի է, մինչև խորհրդային կարգերի հաստատումը Հայաստանի դպրոցներում ընդունված էին խստագույն պատիժներ, այդ թվում նաև անողոք ծեծը: Կային ծեծի հատուկ հարմարանքներ, որոնցից տարածված էր «ֆալախա» կոչված գործիքը: Այն պատրաստվում էր փայտից, նրա մեջ էին ամրացնում պատժվող երեխայի մերկ ոտքերը և ծեծում ճիպոտներով:*

*Ահա այդպիսի պատժի է ենթարկվում նաև փոքրիկ Հարությունը: Նրան այնպես են ծեծում, որ օրերով անկողին է ընկնում: Առողջանալուց հետո նա այդ մասին գրում է մի սրտաճմլիկ բանաստեղծություն, որը այժմ պահպանվում է Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանի № 8213 ձեռագրում:*

*Այդ բանաստեղծությունը մեր առջև բացում է միջնադարյան դպրոցի մոտավոր պատկերը: Դպրոցը կից է եղել վանքին, դասատուն կոչվել է վարդապետ, իսկ դպրոց մտնողի աչքին առաջին հերթին երևացել է դասարանի խորքում «վեց կանգուն» երկարություն ունեցող սարսափազդու ֆալախան:*

*«Ֆալախա» բանաստեղծությունը մեզ հասած միջնադարյան ձեռագրերից միակն է՝ այդ թեմայով, գրված պատժված աշակերտի ձեռքով: Բանաստեղծությունը հին հայերենով է (գրաբարով): Ստորև տպագրում ենք թարգմանաբար և փոքր կրճատումներով:*

ԱՍԱՏՈՒՐ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ
(Պատմական գիտությունների դոկտոր)



ինչպես խոստովանում եմ Ձեզ: Եվ, պատկերացնո՞ւմ եք, հայրիկըս, միշտ սառն ու խիստ թվացող հայրիկս, կշտամբելու փոխարեն շոյեց գլուխս ու ասաց.

— Ես կամաց-կամաց համոզվում եմ, Սենի՛կ, որ դու լավ մարդ ես դառնալու: Դու այսօր քո ամենալավ քննությունն ես հանձնել:

Իսկ հետևյալ օրը բերեց ինձ մի նոր ինքնահոս՝ նույնից: Բաբկենն էլ բերեց, չէի վերցընում, շատ ստիպեց...

Հիմա ես երկու նոր ինքնահոս ունեմ, սակայն, չգիտեմ ինչո՞ւ, ոչ մեկին էլ նայել չեմ կարողանում:

Այս նամակն էլ մեր տան հին գրչով եմ գրել...»

Ափսոս, որ նա ամաչել էր, չէր գրել իր հասցեն: Ես կցանկանայի ոչ միայն մի ընդարձակ նամակով պատասխանել նրան, այլև հանդիպել, անձամբ ծանոթանալ: Բայց քանի որ առայժմ անհնարին է այդ, ապա ես միայն կարող եմ հոր նման կրկնել նրա հոր խոսքը.

— Այո՛, սիրելի՛ Սենո, ես էլ եմ գտնում, որ դա քո ամենալավ քննությունն է եղել: Ես վստահ եմ, որ շարադրությունդ էլ լավ գրած կլինես: Իսկ իմ կողմից, նամակիդ համար՝ «հինգ»:



ՀԱՐՈՒԹՅՈՒՆ

# ՖԱԼԱԽԱ

Ես եմ փոքրիկ երեխա,
Երեխա,
Ոտքերս դրին ֆալախա,
Այդ պատճառով ես փախա.
Վա՜յ է ինձ:

Ասի իմ մայր Նազլուին,
Նազլուին,
Իմ մեծ եղբայր Սարգսին,
Նաև մեր ազգականին.
Վա՜յ է ինձ:

Ես եմ փոքրիկ երեխա,
Երեխա,
Ոտքերս դրի ֆալախա,
Այդ պատճառով ես փախա.
Վա՜յ է ինձ:

Երբ գնացի ես վանքը,
Ես վանքը,
Թե կարդամ «Սաղմոս» գիրքը,
Տեսա՝ շատ ծանր էր կարգը.
Վա՜յ է ինձ:

Երբ որ մտա վարժատուն,
Վարժատուն,
Նայեցի դեպի անկյուն,
Ֆալախա էր վեց կանգուն.
Վա՜յ է ինձ:



Ես եմ փոքրիկ երեխա,
Երեխա,
Ոտքերս դրին ֆալախա,
Այդ պատճառով ես փախա.
Վա՜յ է ինձ:

Երբ ինձ դրին ֆալախա,
Ֆալախա,
Եվ ծեծեցին անխնա,
Ոչ ոք չասաց մեղք է նա.
Վա՜յ է ինձ:

Վա՜յ իմ գալու օրերին,
Օրերին,
Դեղ քսեք իմ ոտքերին,
Արյունոտ եղունգներին.
Վա՜յ է ինձ:

Ասացի վարդապետին,
Վարդապետին,
Չեմ դիմանա քո փայտին,
Փնջով կապած ճիպոտին.
Վա՜յ է ինձ:

Ասացի, թե՝ վարդապե՛տ,
Վարդապե՛տ,
Այլևս չեմ դառնա ետ,
Մնաս բարով այսուհետ.
Վա՜յ է ինձ:

Երբ որ հասա ես մեր տուն,
Ես մեր տուն,
Յոթն օր ընկա խորը քուն.
Ո՞նց մնայիր դու արթուն,
Հարություն:

Ես եմ փոքրիկ երեխա,
Երեխա,
Ոտքերս դրին ֆալախա,
Այդ պատճառով ես փախա.
Վա՜յ է ինձ:

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ






# ՍՏԱՄԲՈՒԼՑԻ ՃԱՐՊԻԿԸ

*ՎԱԴԻՄ ԿԱՍԻՍ*

Բոլորը նրան Ճարպիկ էին անվանում։ Նա վաղ հասակում զրկվել էր ծնողներից, և Ստամբուլի ծովափը, շուկաներն ու փողոցները տուն էին դարձել նրա համար։ Նա ծակծկված կապույտ մայկա էր հագնում և ձյութած թոկով գոտևորված վարտիք։

Տղան բեռնակիր գետանավերից ձկներով լի զամբյուղներ էր տեղափոխում, սուրճ էր տանում բաժանում, թերթեր էր վաճառում։ Օրերից մի օր էլ նրան Ստամբուլից Իզմիր ուղևորվող նավի վրա աշխատանքի ընդունեցին որպես բեռնակիր։

Մի անգամ, երեկոյան, Ճարպիկը առափնյա փողոցը գնաց։ Գրանիտե ձողաշարից այն կողմ փոթորկվում էր էգեյան ծովը։ Նրա ուշադրությունը գրավեց մի բարձր շենք, որի առաջ տարբեր երկրների դրոշակներ էին ծածանվում։

«Գուցե սա օտարերկրյա ծովայինների ակո՞ւմբ է,— մտածեց նա ու քայլեց դեպի մուտքը։— Չէ՞ որ ես էլ նավաստի եմ»։

Դռների մոտ նա հրացաններով զինված պահակներ տեսավ։

— Այդ ո՞ւր ես քշում այդպես,— լսեց նա ոստիկանի ձայնը։— Չե՞ս տեսնում այստեղ Հյուսիսատլանտյան զինվորական դաշինքի շտաբն է։ Մեկ էլ տեսար սվինի վրա առան քեզ և վերջ...

Վերջին խոսքերը Ճարպիկը արդեն չլսեց։ Նա մի կողմ թռավ ու ներս ընկավ ինչ-որ դարբասից։ Նրա դիմաց մեծ բակ էր, խորքում՝ աղբակույտ։ Ճարպիկը հավասարակշռությունը կորցնելով, ընկավ գետնին՝ փշոտ ճյուղերի վրա։ Երբ ետ էր դառնում, տեսավ, որ ընկել էր սաղարթաթափ տոնածառի վրա։ Այդպիսի տոնածառ նա մի անգամ էլ հարուստ դերձակուհու տանն էր տեսել, որին սուրճ էր տարել։ Աղբակույտի մյուս կողմում, ուրիշ տոնածառերի մոտ, իր նման թուրք երեխաներ կային։

«Երջանիկները» փայլուն թղթերի մեջ շոկոլադի կտորներ էին գտնում ու լիզում ծառի վրա մնացած թղթերը։ Ճարպիկը բղավեց.

— Հե՜յ, որտեղի՞ց այստեղ այսքան համով բան։

— Իսկ դու որտեղի՞ց ես,— հարցրեց նրանից մեծ մի տղա։

Ճարպիկը չհասցրեց պատասխանել։ Մեկը բռնել էր նրա ականջից։

Ոստիկանատանը նա երդվեց, որ էլ երբեք չի մտնի այն բակը, որտեղ ապրում են ամերիկյան սպաները։

Վերադառնալով Ստամբուլ, նա այդ բոլորի մասին պատմեց իր ընկերներին ու ասաց.

— Ես գտա, թե ինչպես պետք է վրեժս առնեմ այդ չար մարդկանցից։

Եվ ահա եկավ այն օրը, երբ մի քանի հարյուր, յոթից տաս տարեկան թուրք երեխաներ քաղաքի փողոցները ելան։

Նրանց գլխավերևում փողփողում էին պլակատները։ Դրանց վրա Ճարպիկի անվարժ ձեռքով գրված էր. «Մի՞թե մենք մարդ չենք», «Ստամբուլցինե՛ր, նայեք մեզ»։ Ոստիկանությունը չհանդգնեց ցրել հսկայական քաղաքի փողոցներով անցնող երեխաների ցույցը, բոլորի առջևում Ճարպիկն էր՝ իր ծակծըկված կապույտ մայկան ու ձյութած թոկով գոտեվորված վարտիքը հագին։

*Թարգմ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆԻ*



# ՄԻ ԿԱՏԱԿ-ԵՐԳԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Ղազախի դպրոցի ուսուցիչ Տեր-Զաքարը ուշանում էր: Աշակերտները իրար գլխի հավաքված սպասում էին: Այդ ժամանակ եկավ նիհար, բարձրահասակ մի մարդ: Հարցրեց Տեր-Զաքարին, ասաց, որ վաղուց չի տեսել նրան՝ իր դասընկերոջը, ուզում է տեսնել: Եվ ինքն էլ սկսեց սպասել: Տղաները սսկվեցին, լեզուները բունը դրին և միայն աչքի տակով ծածուկ զննում էին նրա հագուստ-կապուստը: Բայց Տեր-Զաքարի ընկերը իր անուշ-անուշ ժպիտով և հարցուփորձով նրանց լեզուները բնից հանեց: Երբ Տեր-Զաքարը եկավ, տեսավ ընկերն ու երեխաները խմբով երգում են: Ի՞նչ էին երգում. մի երգ, որ հենց այստեղ, երեխաներին զբաղեցնելու համար Տեր-Զաքարի ընկերը տեղնուտեղը հորինել էր, տեղնուտեղը սովորեցրել նրանց...

Երգում էին այն եղանակով, որով երգվում էր Ղ. Աղայանի «Մարտը տալիս է ձնծաղիկ» բանաստեղծությունը (իսկ այդ եղանակը Վերդիի «Տրավիատա» օպերայի ժերմոնի արիայի եղանակն է):

Ահա այդ երգի տեքստն ու եղանակը.

Սուրի՛կ, նայի՛ր մեր ճորթին,
Ի՞նչ սիրուն է իր մորթին,
Պոչը՝ ծաղիկ ու երկար,
Կոճերին է ճավասար:

Այս դեպքը, որ տեղի է ունեցել 1911 թվին, պատմել է Արշ. Առուստամյանը իր 29. 11. 1936 թվակիր գրության մեջ, իսկ գրությունը պահվում է Հովհ. Թումանյանի տուն-թանգարանում:

Հասկացա՞ք, թե ով էր բարձրահասակ այդ մարդը:

Նա երգ ու երաժշտություն շատ էր սիրում: Ինքն էլ երաժշտական շնորհք ուներ, սիրում էր եղանակներ հորինել: Երբեմն էլ իր բանաստեղծություններին եվրոպական մեղեդիներ էր հարմարեցնում, ու իր երեխաներից կազմած երգչախմբով երգում էին տանը հաճախակի տեղի ունեցող համերգ-երեկույթներին:

Շատ տարածված ու սիրված է նրա «Ա՜խ, ի՜նչ լավ են» բանաստեղծության համար իր իսկ հորինած մեղեդին: Այդ երգը շատ անգամ է արժանացել պրոֆեսիոնալ երգիչների կատարմանը: Նա շատ էր սիրում նաև կատակային երգեր հորինել, որոնք դժբախտաբար ժամանակին գրի չեն առնվել, և դրանցից միայն այս մեկն է մեզ հասել:

*ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆ*












## ՀՐԱՇՔ-ԾԱՌԸ

Պապայա կամ սեխածառ— այսպես է կոչվում բարիքների այս կենդանի շտեմարանը, արևադարձային բուսական աշխարհի զարդերից մեկը:

Պապայայի պտուղները թե՛ դրսից, թե՛ ներսից նման են սեխի, դրա համար էլ կոչվում է նաև սեխի ծառ:

Պապայան առաջին անգամ տեսել են իսպանացի նվաճողները Պանամայում՝ XVI դարում: XVII դարում բերել են Ասիա և այժմ տարածված է Աֆրիկայում, Հնդկաստանում, Ավստրալիայում, Մալայան կղզիներում, Ցեյլոնում:

Պապայան ըստ էության ոչ թե ծառ է, այլ՝ խոտաբույս, ինչպես, օրինակ, բանանը, որովհետև նրա բունը երբեք չի ճյուղավորվում, փայտ չի դառնում, թեև հասնում է 10 մ բարձրության, իսկ տրամագիծը՝ 30 սմ-ի, Բունը գագաթին կրում է մատնաձև տերևներից կազմված մի հսկա հովանոց, իսկ պտուղներն աճում են բնի վրա:

Պապայայի կամ սեխածառի պտուղները կշռում են 300 գրամից մինչև 2 կիլոգրամ: Տարբեր տեսակի ծառերը տարբեր ձևի պտուղներ ունեն՝ տանձանման, ձըվաձև, գլանաձև: Ոչ միայն տարբեր տեսակների, այլև միևնույն ծառի պտուղները տարբեր համ ունեն:

Սեխածառը շատ փափկասուն է. վնասվում է ոչ միայն սառնամանիքի, այլև ցածր ջերմաստիճանի դեպքում: Մինչև իսկ արևադարձային երկրներում 1000 մետրից բարձր վայրը անբարենպաստ է համարվում սեխածառի պլանտացիաների համար: Պապայան պտղաբերում է տնկելուց 8-18 ամիս անց: Եթե պտուղները նախատեսվում են տեղում օգտագործելու համար, ապա թողնվում են ծառի վրա մինչև լրիվ հասունանալը: Իսկ տեղափոխելու ենթակա պտուղները, հենց որ մի փոքր դեղնում են, հավաքում լցնում են պահեստները, որտեղ 16° ջերմության մեջ, աստիճանաբար հասունանում են:

Սեխածառը և նրա պտուղները պարունակում են կըրախմալ, շաքար, վիտամիններ, իսկ ամենագլխավորը բարձրարժեք խմորիչ պապաինն է, որը իր ներգործությամբ նման է ստամոքսահյութին: Ջրում լուծված նրա հյութի մի քանի կաթիլը փափկացնում է ամենակոշտ միսը, ասես թե սկսում է մարսվել: Նույն ազդեցությունը կթողնի նաև ծառի տերևը, եթե նրա մեջ փաթաթենք միսը: Պապաինը թարմացնում է գարեջուրը, գինին է դարձնում մաճառը, ուժեղացնում պանրի բուրմունքը: Կաշին պապաինով փափկացնում են, որպեսզի դաբաղելիս չսեղմվի:

Պապաինի այդ անսովոր հատկություններով է բացատրվում սեխածառի պտուղների բազմազան օգտագործումը սննդի և թեթև արդյունաբերության մեջ: Նրանցից ստանում են զանազան խմիչքներ, թթուներ, ջեմեր, պաղպաղակներ, հյութեր, որոնք ունեն նաև բուժիչ հատկություններ: Սեխածառի հյութից պատրաստում են դեղեր՝ բուժելու համար վերքեր, այրվածքներ, մաշկային, ստամոքսային, ալերգիկ և այլ հիվանդություններ:

Պտղահյութը՝ լատեքսը, որը պապաին է պարունակում, հավաքում են մոտավորապես այնպես, ինչպես բնական կաուչուկը: Խակ պտուղների վրա ոչ խորը ճեղք են բացում, տակը դնում ապակե աման, և հյութը կաթում է այնքան ժամանակ, քանի դեռ չի թանձրացել: Մի քանի օր անց, նորից են հյութ վերցնում, և այդպես, մինչև պտուղը հասունանում է: Բերքառատ տարիներին մեկ հեկտարից հավաքում են 100 տոննայից ավելի պտուղ և մինչև 245 կգ չոր լատեքս:

Սեխածառը վաղուց արդեն գրավել է նաև մեր բուսաբույծների ուշադրությունը: 1904 թվականին Սուխումիում տնկեցին առաջին սեխածառերը, որոնք աճեցին մինչև պտղաբերության ժամանակը և ցրտահարվեցին:

Մի քանի տարի առաջ Գագրայում մեր բուսաբույծներն աճեցրին սեխածառի առաջին նմուշները ջերմոցային պայմաններում և յուրաքանչյուր ծառից ստացան մինչև 300 գ պապաին:

1964 թվականից փորձեր են արվում սեխածառը աճեցնել բացօթյա, բնական պայմաններում, սակայն պտուղներն ստացվում են փոքր (100—150 գ) և մինչև հասնելը ցրտից փչանում են: Փորձերը շարունակվում են ցրտադիմացկուն տեսակներ ստանալու ուղղությամբ և, անշուշտ, տարիներ հետո մեր երկրում էլ մշտական բնակություն կհաստատի հրաշք-ծառը, մարդու այդ բազմաշնորհ բարեկամը:



## ՍԱՐԴԵՐԸ ՉԱՐ ՈՒ ԲԱՐԻ

Անտառում կամ մարգագետնում ապրում են մեկից հինգ միլիոն տարբեր տեսակի սարդեր: Յուրաքանչյուրը օրական որսում է մինչև 500 միջատ: Ուրեմն, առատ որսի դեպքում, սարդերը ոչնչացնում են մոտ 2,5 միլիարդ միջատ: Իսկ եթե դրանց մի մասը ճանճեր ու զանազան վնասատուներ լինեն, դժվար չէ պատկերացնել, թե որքա՞ն օգտակար գործ են անում սարդերը:

Ուրիշ էլ ինչով են աչքի ընկնում սարդերը. իհարկե, «ջուլհակության» իրենց զարմանալի արհեստով: Նրանք ոստայնը հյուսում են այնքան բարակ թելով, որ եթե փաթաթենք երկրագնդի շուրջը, կկշռի 340 գրամ: Ոստայնաթելը ավելի ամուր է,



քան նույն հաստության պողպատալարը, դիմացկուն է նեյլոնի չափ, բայց դրանից կրկնակի անգամ ավելի առաձգական է:

Մարդիկ վաղուց են փորձել օգտագործել ոստայնաթելը: 70 տարի առաջ դիրիժաբլի համար սկսեցին գործել ոստայնե կտոր, բայց 5 մետրից ավելին հինել չկարողացան: Ոստայնագործվածքը թեև շատ ավելի գեղեցիկ և ամուր է լինում, քան մետաքսը, բայց դրանից տասնյակ անգամ ավելի թանկ է նստում:

Այժմ բիոնիկներն ու քիմիկոսները ուշադիր ուսումնասիրում են սարդերին. բիոնիկներին հետաքրքրում է դրանց քայլվածքի զարմանալի տեխնիկան, իսկ քիմիկոսներին՝ այն նյութը, որի ազդեցությամբ կառուցվածքային փոփոխություններ են կատարում սարդոստայնը հինելիս:

Սակայն կան սարդերի որոշ տեսակներ, որոնք խիստ թունավոր են, վտանգավոր՝ մարդու և կենդանիների համար: Դրանցից է կարակուրտը (սև, փորի վրա կարմրաճերմակ շերտով), որը 50 անգամ ավելի թունավոր է, քան մորմը (գետնի սարդը), 15 անգամ ավելի թունավոր, քան օձը: Խայթվողը մեկ-երկու ժամ հետո մահանում է, եթե որևէ միջոց չի ձեռնարկվում: Կծում է հատկապես քնած մարդուն: Դրա համար բացօթյա գիշերելու դեպքում պետք է ընտրել այնպիսի վայր, ուր չկան թփուտներ, բարձըր խոտեր, փոսեր, ծայրեր: Կարակուրտներ ավելի շատ լինում են Ռուսաստանի հարավում, Միջին Ասիայում, Նախակովկասում, Ղրիմում: Անցյալում, անասունի կոտորածից խուսափելու համար, տավարածները ստիպված են եղել քոչել ավելի վատ արոտավայրեր, միայն թե հեռու լինեն թունավոր սարդերից: 10—20 տարին մեկ անգամ հանկարծ խիստ բազմանում են կարակուրտները, հետո էլ՝ իշամեղուները, որոնք անխնա բնաջնջում են սրանց:

## ԱՂԱՎՆԻՆ ԹՌԻՉՔԻ ՊԱՀԻՆ

*Թռչող աղավնու կենսագործունեությունը ուսումնասիրելու նըպատակով, աղավնու մեջքին ամրացրին մի շատ փոքրիկ ռադիո-*



*հաղորդիչ, որը պետք է չափեր և հաղորդեր նրա սրտի զարկերի, շնչառության ու թևերի շարժման հաճախականությունը: Ստացվեցին շատ հետաքրքիր տվյալներ: Հանգստի պահին աղավնին շընչում էր մեկ րոպեում 25—30 անգամ: Թռչելիս այդ թիվը հասավ 500-ի: Իսկ սիրտը, որ մինչև թռիչքը զարկում էր րոպեում 150 անգամ, թռիչքի պահին հասավ 600-ի:*

## ՀՈՂՄԱԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆ

Խոպանի հեռավոր սովխոզներին, տայգայի բնակավայրերին ու արդյունաբերական ձեռնարկություններին էլեկտրականություն մատակարարելու համար ինժեներներն առաջարկել են օգտագործել ստրատոսֆերայի քամու էներգիան: 100 մ երկարություն ունեցող աէրոստատը կշռում է մոտ 30 տոննա: Այն հեշտությամբ կարելի է բարձրացնել 15—18 կմ, որտեղ քամու արագությունը լինում է 25—30 մետր-վայրկյանում: Իհարկե, որպեսզի այդ տարօրինակ էլեկտրակայանը կարողանա մշտապես գործել և մի գեղեցիկ օր չթռչի գնա, այն կապվելու է գետնին սինթետիկ նյութից շինված ամուր ու թեթև պարաններով:


Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 5 մայիս 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Մայիսյան երգ — Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ . . . . . 2
2. Մայիսը Հայաստանում — Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ . . . . 3
3. Հաղթանակի առավոտ — Ս. ԽԱՐԱՋՅԱՆ . . . . 4
4. Գարուն — Վ. ԲԱԲԱՅԱՆ . . . . . . . 5
5. Երբ ամբողջ գիշեր ճնած էր արևը — Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ 5
6. Վոլֆգանգ Բորխերտ . . . . . . . . 7
7. Դպրոց առանց զանգի — Միք. ՀԱԿՈԲՅԱՆ . . 9
8. Մայիսի չրջանաձև երեկոները — Դ. ՄՈՒՐԱԴՅԱՆ . 11
9. Մանուշակներ ելան հողից — Թ. ԲՈԼՈՋՐՅԱՆ . . 11
10. Շունն ու գայլը — Պ. ՍԵՎԱԿ . . . . . 12
11. Քննություն — Հ. ՂՈՒԿԱՍՅԱՆ . . . . . 14
12. Մաշտոցի անվան Մատենադարանի № 8213 ձեռագիրը 16
13. Քո ճեռավոր բարեկամը . . . . . . . 18
14. Մի կատակ-երգի պատմություն — Լ. ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆ 19
15. Ինչուկ . . . . . . . . . . 20
16. Ինչպես քանդակել — Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ . . . . 23
17. Իմ ծիծեռնակը — Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

*Շապիկի առաջին էջը՝*

*Նկ. ՌՈՒԲԵՆ ՂԵՎՈՆԴՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՋՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան-15, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05519: Պատվեր՝ 309: Տպաքանակ՝ 70300: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 5/V, 1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.

# ԻՆՉՊԵՍ



Սկսնակի համար քանդակելու ամենալավագույն նյութը պլաստիլինն է, որով կարելի է ցանկացած նրբությունները վերարտադրել:

Սովորաբար սկսնակները վերարտադրում են բնությունից ստացած տպավորությունները, սակայն, հաջողության հասնելու համար, ավելի լավ է, երբ բնականից դիտելով՝ քանդակում են արկղ, դույլ, տակառ, ճամպրուկ, սեղան և երկրաչափական պարզից-բարդ ձևի առարկաներ ու իրեր: Դա օգնում է հետագայում պատկերել մարդկանց և կենդանիներին շարժման վիճակում: Դիցուք, ձի եք քանդակելու, նախ պետք է ծեփելով ձևավորեք ձիու իրանը, ապա ավելացնեք ոտքերը, գլուխը, պոչը և ապա մանրամասնությունները: Եթե հնարավոր չէ այդ կենդանիները դիտել բնականում, ապա օգտվեցեք նրանց նկարներից, որոնք, անշուշտ, կօգնեն ճիշտ վերարտադրել համաչափությունները ու կենդանու յուրահատուկ ձևերը:

Խոսք բացվեց նկարներից օգտվելու մասին, ասենք, որ նկարներից օգտվել կարելի է, քանի որ տափակ ձևերն ու հարթությունները դուք ստեղծագործաբար վեր եք ածում նյութական շոշափելի ձևերի, իսկ քանդակի պատրաստի նմուշից ընդօրինակելը մեխանիկական կրկնություն է և առանձին վարպետություն ու հմտություն չի պահանջում:

Պլաստիլինի քանդակների լավագույն նմուշները պահելիս՝ պետք է զգուշանալ արևի շողերից և վառարանի ջերմությունից: Երկու դեպքում էլ այն կարող է հալվել: Իսկ ձմռանը ցրտից կարծրանում է այնքան, որ դժվարանում է կիսատ թողած աշխատանքը շարունակել:

Եթե ցանկանում եք պլաստիլինի գույների խառնուրդ ստանալ, ապա յուրաքանչյուր գույնը տրորեք ու բաց արեք, ինչպես լավաշի գունդը, շարեք իրար վրա ու մի քանի անգամ ծալեք: Ստացված զանգվա-



Նկ. 1.




ծից կտրատեք փոքրիկ կտորներ և ձեռքի մեջ տրորեք այնքան, որ համասեռ գույն ստացվի: Լավ կլինի, որ քանդակելիս սեղանին փռեք 30—40 սմ մեծության մոմլաթ և դրա վրա տրորեք պլաստիլինը: Հարկավոր իրերը սեղանի վրա դասավորեք այնպես, որ դրանցից օգտվելիս ստիպված չլինեք տեղից վեր կենալ, ավելորդ շարժումներ կատարել, որը կարող է ցրել արդեն ընկալված մտապատկերները: Այնպես նստեք, որ լույ-

# ՔԱՆԴԱԿԵԼ

սի ճառագայթները չընկնեն ձեր աչքերին, այլապես աչքերը կարող են շուտ հոգնել:

Սկզբնական քանդակները բնականաբար փոքր չափերի են լինում, սակայն հետագայում ավելի մեծը քանդակելու խնդիրը դառնում է ներքին պահանջ: Պլաստիլինը փափուկ նյութ լինելով՝ ամենաթույլ հըպումից անգամ կարող է կորցնել իր նախկին ձևը: Մեծածավալ նմուշներ պատրաստելիս՝ անհրաժեշտ է մետաղյա լարերով ամրություն տալ քանդակներին: Որպես պատվանդան կարելի է օգտագործել սովորական տախտակը: Դիցուք, քանդակել եք մարդու ֆիգուր: Նախ պետք է ալյումինե կամ պղնձե լարերից պատրաստեք նրա կմախքը (տես նկ. 1) և ապա, պահպանելով մարմնի համաչափությունները, ծեփեք այն (նկ. 2):

Ձեր ստեղծագործությունը հաջող կլինի, եթե միաժամանակ ուսումնասիրեք ֆիգուրայի անատոմիական կմախքը կամ դրա պլակատը, որտեղ պարզ երևում են նաև ոսկորների ու հոդային հանգույցների ձևերն ու միացումները:

Քանդակելուց առաջ լավ կլինի քանդակվող առարկան նախապես մատիտով նկարել՝ թեկուզ նրա գծային պատկերը (առանց լուսաստվերների): Այդ կօգնի ձեզ կողմնորոշվել համաչափությունների նկատմամբ: Գծանկարելիս պատկերը տեղադրեք թղթի կենտրոնում: Կկոցած աչքերով նայեք նկարվող օբյեկտին, նախ պատկերեք մեծ համաչափությունները, ապա նըրա վրա ավելացրեք ավելի փոքր ձևերը: Նկարելիս պետք է հեռու լինել օբյեկտի չափսից ոչ պակաս երեք անգամ:

Մարդկային ֆիգուրներ քանդակելիս թե նկարելիս մի՛ տարվեք հագուստի ծալքերի կամ դիմագծերի մանրուքների պատկերմամբ, առանց դրանց էլ դուք կարող եք ձեր մտքերն արտահայտել, եթե գտնված է համապատասխան շարժումը:

Քանդակը ավարտին հասցնելու ժամանակ, ձևերը կոկելով մի՛ միացրեք իրար. դրանից հաճախ վնասվում են կենդանություն տվող մազուկները:

Որպես քանդակելու նյութ կարող եք օգտագործել նաև կավահողը, որը պետք է խնամքով մաքրել քարերից ու այլ մնացուկներից, հետո լցնել ամանի մեջ կամ գետնի վրա՝ մի անկյունում, և թրջել: Որոշ ժամանակ անց, պետք է տրորել այնպես, որ ոչ մի գնդիկ չմնա: Լավ տրորելը նպաստում է նրա առաձգականությանը և որակին: Կիսատ մնացած քանդակը պետք է փաթաթել խոնավ շորով, որպեսզի չչորանա, մինչև ավարտին հասցնելը: Լավագույն նմուշները շատ հասարակ ձևով կարելի է նաև թրծել: Քանդակը նախապես պետք է ծածկել վառելիքի կտորներով, այնպես որ քանդակի որևէ հատվածը երևա: Այնուհետև, երբ նկատում եք, որ այն շիկացել է, հանեք, թողեք, որ սառչի: Թրծելիս քանդակը կարող է կոտրվել կամ ճաք տալ: Կնշանակի՝ քանդակը լավ չի չորացել կամ կավի մեջ երկաթի, քարի կտորներ են մնացել:

Քանդակելու գործիքները կարող եք պատրաստել ինքներդ: Վերցրեք 15 սմ երկարություն ունեցող մի փայտի կտոր, հղկեք, ծայրերը սրեք և օգտագործեք որպես քերիչ (տես նկ. 3):

*ՍԵՐԳԵՅ ԽԱՉԱՏՐՅԱՆ*



Նկ. 2



Նկ. 3

ԻՆԴԵՔՍ՝ 77806

# ԻՄ ԾԻԾԵՌՆԱԿԸ

Իմ ծիծեռնակը,
Իմ ծիծեռնակը,
Նայի՛ր, ճախրում է
Իմ ծիծեռնակը:
Անհունը ճեղքում,
Ասես կանչում է,
Կանչում է, կանչում
Իմ ծիծեռնակը:
Սիրտս սրտի մեջ
Իմ ծիծեռնակի՝
Նա հեռանում է,
Այդ ո՞ւր է թռչում...
Սև ու ճերմակը
Անհունին ձուլում
Կորցնում եմ հանկարծ
Իմ ծիծեռնակը:
Իսկ անհունի մեջ
Նրա թևերից
Գարունն է մանրիկ
Շաղվում, մակաղվում:
Իմ ծիծեռնակը,
Գարուն թևերին,
Անհունին ձուլվում,
Գարուն է դառնում:

ԳԱՅԱՆԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
(Արտաշատի շրջ., գ. Վ. Արտաշատ)

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ





